## Ձյունը գալիս է

ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱԶՅԱՆ

Ձմռան ամիս է,
Ձյունը գալիս է,
Ամպը լալիս է
Պաղ արցունքով,
Հողմի խենթ պարը
Պատում է սարը,
Ճռճռում անտառը
Ահեղ երգով:
Այս ծմռան ձեռքը
Ծածկել է հերկը,
Եվ առվի երգն է
Դաշտում լռել,
Փոքրիկ ջրվեժը
Թռիչքի մեջ իր,
Տեսեք, ինչպես է
Կախված սառել:
Ամպը լալիս է,
Ձյունը գալիս է,
Երգը տալիս է
Նա մայր հողին,
Ծածկում է լեռը,
Բոլոր հանդերը,
Քնած արտերը
Ու սայլուղին:

Նկ. [illegible]



## ԱՇԽԱՐՀԻ ԱՄԵՆԱՕՐԻՆԱԿԵԼԻ ՏՂԱՆ

ԱԶԱՏ ՇԱՀԻՆՅԱՆ

Չգիտեմ դուք ինչպես, բայց ես նախանձում եմ բոլոր օրինակելի տղաներին: Իմ կարծիքով, նրանք ամենաբախտավոր մարդիկն են աշխարհում: Ասենք, ոչ մի բախտ. պարզապես նրանք չափից ավելի հանգիստ են, ուշադիր և քաղաքավարի: Այդ բոլորը նրանց մոտ այնպես հեշտ ու հրաշալի է ստացվում, որ մարդ նախանձից քիչ է մնում խելքը թռցնի: Իսկ ես... Ամեն ինչ անում եմ, որ գոնե մի անգամ էլ ես դառնամ այդպիսին, բայց չի ստացվում:

Ես գիտեմ, որ օրինակելի տղաներ ու աղջիկներ շատ կան: Բայց, ա՜յ, կա մեկը, որը իմ կարծիքով ամենաօրինակելի տղան է ամբողջ աշխարհում:

Ես ու նա սովորում ենք միևնույն դպրոցի միևնույն դասարանում: Ապրում ենք միևնույն շենքի միևնույն հարկում:

Մեկ էլ տեսար մի հաստափոր գիրք ձեռքին՝ դուրս եկավ պատշգամբ ու սկսեց կարդալ: Միայն չգիտեմ, թե ինչու հատկապես այն ժամանակ, երբ ես բակում մաքուր օդ եմ շնչում: Կամ ավելի ճիշտ, երբ գնդակը գլորվում է մեր ոտքերի տակ:

Եվ երբ հաղթանակի երջանկությունից գլուխս կորցրած, աղմուկով ընկնում եմ տուն, մայրիկս ցույց է տալիս ինձ Աշխարհի ամենաօրինակելի տղային ու հիացած ասում.

— Ինչքան դուրս եմ գալիս պատշգամբ, գիրքը ձեռքին եմ տեսնում, իսկ դո՞ւ...

Դե, իհարկե, գիրքը ձեռքին պատշգամբ դուրս

ԴԵԿՏԵՄԲԵՐ
№ 12 1963 Թ.



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
35-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

*գալը այնքան էլ դժվար բան չէ, բայց կարդա՞լ...*

*Ա՛յ, դա արդեն ուրիշ է։ Ես զարմանում եմ, թե նա ինչպես է կարողանում պատշգամբում նստած գիրք կարդալ, երբ բակից շարունակ լսվում են տղաների ուրախ բացականչությունները և ուրիշ հրաշալի ձայներ։*

*Այդ բոլորը դեռ ոչինչ. հարկավոր է տեսնել, թե նա ինչպես է անցնում բակով և գլխի շարժումով աջ ու ձախ բարևում հարևաններին։ Բարևելիս նա անպայման մի փոքր ժպտում է և իսկույն լրջանալով, անցնում առաջ։ Զարմանալին այն է, որ նա կարողանում է համարձակ, առանց շփոթվելու խոսել նույնիսկ մեր շենքում ապրող ծերունի պրոֆեսորի հետ։*

*— Ա՜խ, ինչ բարեկիրթ ու քաղաքավարի տղա է,— երջանիկ հառաչանքով ասում է մայրս։— Ահա թե ումից դու պետք է օրինակ վերցնես։*

* * *

*Ես նստում եմ առաջին շարքի նախավերջին նստարանին՝ ուղղակի պատուհանի մոտ։ Իմ կողքին նստում է Աշխարհի ամենաօրինակելի տղան։ Մայրիկիս ասելով, այդ շատ լավ է, որ նստում է իմ կողքին։ Այդպես գուցե փոքր-ինչ քաղաքավարություն սովորեմ նրանից։*

*Եվ այսպես, մենք երկուսով նստում ենք միևնույն շարքի միևնույն նստարանին։ Մեր դիմաց նստում են արևահար քթով տղան և շեկլիկ հյուսքերով աղջիկը։ Իսկ մեր ետևում «ծիծաղի սենյակն է»։ Այդպես ենք անվանում մեր շարքի վերջին նստարանը, որի վրա նստում են դպրոցի ամենաանհոգ և ամենածիծաղելի երկու տղաները։ Նրանք շատ ծիծաղելի են հենց նրա համար, որ շարունակ ծիծաղում են։ Բավական է դասարանում մի ճանճ տզզա, և երկուսն էլ միասին կըսկըսեն հռհռալ ու բրբջալ։ Կարծես նրանք միայն նրա համար են աշխարհ եկել, որ անվերջ ծիծաղեն ու հռհռան։*

*Մեր դասարանի պատուհանները նայում են փողոցին։ Փողոցի մյուս կողմում, ուղիղ դպրոցի դեմ-դիմաց մի մեծ շենք են կառուցում։ Այդտեղից լսվում են զանազան մոտորների դղրդոց, մուրճերի թխթխկոց և ուրիշ հետաքրքիր զնգզնգոցներ։ Ես տեսնում եմ, թե ինչպես է բարձր, մետաղյա կռունկի քիթը ճռռոցով թեքվում աջ ու ձախ, բարձրացնելով բետոնե հսկա սալերն ու ամեն տեսակի ծանր բաները։ Չնայած շատ հետաքրքիր է այդ բոլորը, բայց ես ստիպված եմ ինձ դասի ժամանակ դուրս չնայել պատուհանից։ «Է՛հ, ի՞նչ մի մեծ բան է, չեմ նայի ու վե՛րջ...»— մտածում եմ ես, բայց նորից այդ մետաղյա կռունկը իր բետոնե հսկա սալի հետ գալիս և դասարանի պատուհանից ճռռոցով ուղղակի քիթս է մտնում։*

*— Իտալացի գիտնական Տորիչելլին մի այսպիսի փորձ կատարեց...— շարունակում է պատմել ուսուցչուհին։ Բայց նրա բառերի փոխարեն, իմ հետևի նստարանից ականջիս են հասնում ինչ-որ քնաբեր հնչյուններ։*



*Ես բարկացած շրջվում եմ և ի՞նչ... Ծիծաղող տղաներից մեկը գլուխը կիսադատարկ բարձի պես մի կողմ թեքած, անհոգ ու երջանիկ ննջում է՝ քթածակերից ինչ-որ երկարատև սուլոցներ արձակելով, իսկ մյուսը ձգված նստել և, մշուշված աչքերը ուսուցչուհուն հառած, ախորժակով հորանջում է։ Չգիտեմ դուք ինչպես, բայց ես երբ տեսնում եմ հորանջող մարդու, իսկույն վարակվում ու սկսում եմ նրանից ավելի ոգևորված հորանջել։*

*— Բավական է հորանջես, դա անկուլտուրականություն է,— զգուշացրեց ինձ Աշխարհի ամենաօրինակելի տղան, բայց այնպիսի բարձր ձայնով, որ նույնիսկ հետևում նստած տղաները միանգամից դադարեցրին իրենց քնաբեր հնչյունները ու նորից աշխուժացան։*

*Իսկ ուսուցչուհին հանդիմանող հայացքով նայեց մեր կողմը և, առանց ընդհատելու, շարունակեց.*

*— Այսպիսով, Տորիչելլյան այդ իմաստուն հայտնագործությունը գալիս է ապացուցելու...*

*Որ ես դատարկագլուխի մեկն եմ։ Փոխանակ դա-*

.որ լսելու, ինչ-որ անօգուտ ցանցառ բաներով եմ զբաղված: Այս միտքը միանգամից սթափեցրեց ինձ, և ես այլևս չհորանջեցի: Բայց արի տես, որ ինձ նման հիմարի պատճառով, հետևիս նստածներից սոսկած իմ այդ հորանջելու վարակը արագորեն փոխանցվեց Աշխարհի ամենաօրինակելի տղային: Նա սկսեց այնպիսի ջանասիրությամբ բացուխուփ անել բերանը, որ կարծես միանգամից ուզում էր չափել առաստաղի բարձրությունը հատակից: «Այ քեզ խայտառակություն,— մտածում եմ ես:— Իսկ եթե հանկարծ ուսուցչուհին նկատի՞... Ես դեռ ոչինչ, բայց չէ՞ որ նա Աշխարհի ամենաօրինակելի տղան է»: Եվ ահա մի օգտակար միտք փայլեց գլխիս մեջ: Հիշեցի, որ այդպիսի դեպքերում հարկավոր է հանկարծակիի բերել դիմացինին, և նա անմիջապես կդադարի հորանջել: Այն պահին, երբ նա հառաչանքի նման ինչ-որ երկարատև հնչյուն արձակելով, բերանը բաց արեց պատռվելու չափ, ես հայացքս չհեռացնելով ուսուցչուհուց՝ մատս արագ տարա դեպի ինձնից քիչ հեռու սևին տվող մութ խոռոչը: Աշխարհի ամենաօրինակելի տղան հանկարծակիի եկած փակեց բերանը՝ իմ խեղճ մատը թողնելով իր սրածայր ատամների տակ: Ցավից ես այնպես ոռնացի, որ ամբողջ դասարանը ցնցվեց, իսկ հետևումս նստած ծիծաղող տղաները բռնկվեցին երջանիկ և ախորժալուր մի քրքիջով:

— Ի՞նչ պատահեց,— տանջահար դեմքիս նայելով, հարցրեց ուսուցչուհին:

— Նա իր կեղտոտ մատը բերանս մցրեց,— ասաց Աշխարհի ամենաօրինակելի տղան:

— Իսկ ի՞նչ գործ ուներ նրա կեղտոտ մատը քո բերանում:

Դասարանը փռթկաց, իսկ հետևիս անհոգները անզուսպ ծիծաղից սկսեցին իրենց ծնկները ծեծկռտել:

— Այդ իրե՛ն հարցրեք,— վիրավորված ասաց օրինակելի տղան:

— Նստի՛ր,— ասաց ուսուցչուհին և դառնալով ինձ, ավելացրեց.— Ասա՛ տեսնեմ, ո՞վ է Տորիչել-լին:

Ես սրտապնդված ոտքի թռա:

— Իտալացի նշանավոր գիտնական:

— Իսկ ի՞նչ է նա հայտնագործել:

— Ինչ-որ դատարկություն,— ամենայն վստահությամբ պատասխանեցի ես:

Դասարանը լիաթոք քրքջաց, իսկ ծիծաղող տղաները ուղղակի կապտեցին:

«Մի՞թե սխալվել եմ,— մտածում եմ ես:— Եթե այդպես է, ապա ինչո՞ւ է իմ սիրելի մեծ եղբայրը երբեմն մատով տկտկացնում ճակատս ու ասում. «Է՜խ դու, տորիչելլյան դատարկություն»:

— Ի՞նչ է պատահել քեզ. այսօր բոլորովին չես հետաքրքրվում դասով: Ինչպես տեսնում եմ, այդ



լուսամուտը քեզ հանգիստ չի տալիս,— ասաց ուսուցչուհին և, հանելով ինձ իմ տեղից, նստեցրեց շեկլիկ հյուսերով աղջկա կողքին:

Երբ դասարանում քիչ թե շատ կարգ ու կանոն հաստատվեց, ուսուցչուհին շարունակեց ընդհատված դասը: Դրանից հետո նոր միայն իմացա, թե ինչ հայտնագործություն է կատարել Տորիչելլին և ինչպիսի դատարկություն եմ ես:

* *
*

Եվ ահա, ես նստում եմ հասա, անթափանցելի պատի մոտ՝ շեկլիկ հյուսերով աղջկա կողքին: Իսկ թիկունքումս իմ սիրելի նստարանն է՝ մեծ թափանցիկ լուսամուտով, բեռնն ալեր բարձրացվող երկաթե կռունկով և Աշխարհի ամենա-

օրինակելի տղայով։ Բայց այս բոլորից հետո մեր դասարանում մի ուրիշ փոփոխություն էլ կատարվեց։ Ամենասովորական ձևով դասարան մտավ ուսուցչուհին, իսկ նրա հետ՝ ակնոցավոր մի աղջիկ։ Նրան տեսնելուն պես՝ քիչ մնաց հրճվանքից ճչայի։ Դա այն աղջիկն էր, որի հետ ծանոթացել էի ամռանը՝ ճամբարում։ Ու թեպետ նրա քիթը մի փոքր կեռ է և զարդարված խոշորացույցի պես հաստ ապակիներ ունեցող ակնոցով, այնուամենայնիվ նա ինձ համար ամենագեղեցիկ և ամենահրաշալի աղջիկն է ամբողջ աշխարհում։

Ուսուցչուհին ասաց, որ սրանից հետո նա սովորելու է մեր դպրոցում և նստեցրեց նրան իմ նախկին տեղը՝ օրինակելի տղայի կողքին։

— Բարև՛,— հետևի նստարանից շշնջաց Ամենահրաշալի աղջիկը։

— Բարև՛,— առանց շրջվելու պատասխանեցի ես։

— Սա ձեր դասարա՞նն է։

Նա, իհարկե, շատ լավ տեսնում է, որ մեր դասարանն է, բայց էլի հարցնում է. հենց այնպես, հարցնելու համար։ Ես պատրաստվում եմ պատասխանել նրան քնքուշ ու սիրալիր, բայց, չգիտեմ ինչու, էլի առաջվա նման կոշտ ու կոպիտ ասում եմ.

— Իսկ, ի՞նչ է, չե՞ս տեսնում...

Նա այլևս ոչինչ չի հարցնում։ Ես էլ ոչինչ չեմ ասում։ Իհարկե, անմիջապես զղջում եմ կոպիտ պատասխանելու համար և ուզում եմ, որ նա նորից որևէ բան հարցնի, իսկ ես պատասխանեմ նրան ամենագեղեցիկ ու հրաշալի խոսքերով։


Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

«Պատրաստ եմ քեզ համար խաշվել եռացած ջրի մեջ»։ Կամ ավելի սքանչելի մի բան. «Եթե ուզես՝ կուտեմ ամենափշոտ ձուկը առանց որևէ բան հանելու...» Բայց այդ բոլորից ոչ մեկն էլ չեմ կարողանում ասել։ Նույնիսկ մարդավարի բարևել էլ չեմ կարողանում։ Իսկ Աշխարհի ամենաօրինակելի տղան...

— Բարի լո՛ւյս,— ամեն առավոտ դասարան մտնելիս՝ քնքշությամբ ասում է նա։

— Բարի լո՛ւյս,— պատասխանում է աղջիկը։

— Թույլ տվեք նստել,— ասում է օրինակելի տղան։

— Խնդրե՛մ,— պատասխանում է հրաշալի աղջիկը։

— Շնորհակալությո՛ւն,— ասում է Աշխարհի ամենաօրինակելի տղան ու նստում։

Ես տեսնում եմ, թե ինչպես են փայլում աղջկա աչքերը, երբ օրինակելի տղան ամեն անգամ այդպես բարեկիրթ ու քաղաքավարի բարևում, խոսում է նրա հետ։

* * *

Եվ այսպես նրանք միշտ միասին են. միասին են դպրոց գալիս և միասին էլ տուն են վերադառնում։ Պատահում է, որ դասերից հետո ես էլ եմ նրանց հետ տուն վերադառնում։ Ճանապարհին հրաշալի աղջիկը ոգևորված ինչ-որ ծիծաղելի բաներ է պատմում։ Նա ճամբարում էլ այդպես էր. շարունակ ծիծաղելի ու զվարճալի պատմություններ էր պատմում՝ կարդացած գրքերից, կինոնկարներից և ուրիշ-ուրիշ հետաքրքիր տեղերից։ Չէ՞ որ նա ամենախելոք ու սքանչելի աղջիկն է ամբողջ աշխարհում։ Եվ ահա նա պատմում է, ու ես քրքջում եմ եռանդով։ Իսկ Աշխարհի ամենաօրինակելի տղան...

— Բավակա՞ն է, այդ ինչպե՞ս ես հռհռում,— ասում է նա։

— Ախր, շա՜տ ծիծաղելի է,— ասում եմ ես։

— Իսկ դու մի քիչ քաղաքավարի՛ հռհռա,— զգուշացնում է ինձ Աշխարհի ամենաօրինակելի տղան։

Այդ լավ է, որ նա ժամանակին զգուշացնում է ինձ։ Եվ ես աշխատում եմ մի փոքր ավելի բարեկիրթ ու քաղաքավարի հռհռալ։ Թեպետ ես չգիտեմ, թե ինչպես է լինում այդ քաղաքավարի հռհռոցը, բայց այնուամենայնիվ աշխատում եմ օրինակ վերցնել օրինակելի տղայից, որն ամբողջ ճանապարհին իրեն պահում էր զգույշ, ձգված և հանդիսավոր։

Մենք դեռ նոր էինք թեքվել մոտակա փողոցը, երբ շենքի անկյունում կանգնած ինչ-որ տղա ուղղակի դուրս շպրտեց բերանից.

— Հե՜յ դու, չորաչքանի՛, քի՛չ կոտրատվիր, թե չէ ակնոցիդ խոշորացույցները կջարդվեն։

Ամենահրաշալի աղջիկը մի տեսակ շփոթվեց ու կարմրեց։ Ես բարկությունից այնպես սեղմեցի ատամներս, որ քիչ մնաց լեզուս կտրեի նրանց տակ։

«Ա՜խ դու, խոզի՛ մռութ,— մտածում եմ ես,— ինչպե՞ս ես համարձակվում վիրավորել աղջկան։ Հետո ի՞նչ, որ նա ակնոց է կրում։ Նա բոլորովին էլ մեղավոր չի, որ ակնոց է կրում»։ Ես չհամբերեցի ու շրթունքս ատամներիս տակ սեղմած՝ դանդաղ մոտեցա։

— Նա պատրաստվում է կռիվ սարքել, գը-նանք,—ասաց Աշխարհի ամենաօրինակելի տղան, քաշելով հրաշալի աղջկա թևքից։

Ես, իհարկե, բոլորովին էլ չէի պատրաստվում փողոցի մեջ կռիվ սարքել։ Ես միայն ուզում էի ասել փողոցի տղային, թե ինչպիսին է նա։

— Դու ավանակի պոչ ես,—ամենայն քաղաքավարությամբ ասացի ես։

— Իսկ դու փետուրները պոկած խորոզ ես միայն,—ասաց փողոցի տղան։

— Հիմա քո մռութի ճանճերը կքշեմ,— ասացի ես։

Փողոցի տղան միանգամից ձգվեց տեղում։ Երևի նա իսկույն հասկացավ, թե ինչ է նշանակում այդ, բայց իբր կարևորություն չտալով, ասաց.

— Ուրիշ էլ ի՞նչ կարող ես անել ճանճեր քշելուց բացի։

Այստեղ արդեն գետինը դողաց ոտքերիս տակ։ Այսինքն, ավելի ճիշտ, ոտքերս դողացին գետնի վրա։ Միշտ այդպես է, հենց սկսում եմ բարկանալ, ոտքերս այնպես են դողում, կարծես, ուր որ է, պիտի փշրվեն ու թափվեն ցած։ Մի քանի րոպե հետո մենք եռանդով թավալվում էինք հողի ու փոշու մեջ։ Երբ փողոցի տղան արանքը ճղեց, օրինակելի տղան վրդովված դարձավ ինձ ու ասաց.

— Այնուամենայնիվ դու հասցրեցիր կռիվ սարքել։ Դու մոռացար, որ մեզ հետ աղջիկ կա...

Այս խոսքի վրա Ամենահրաշալի աղջիկը մի տեսակ նայեց օրինակելի տղային, նայեց ինձ, կարծես առաջին անգամն էր տեսնում, ապա լուռ ու մտախոհ քայլեց առաջ։ «Ախր, ինչու՞ կռվի բռնվեցի այդ փողոցի տղայի հետ,—մտածում եմ ես։—Չէ՞ որ որոշել էի ամբողջ ճանապարհին ինձ պահել բարեկիրթ ու քաղաքավարի, ինչպես Աշխարհի ամենաօրինակելի տղան, բայց... Իմ արարքը երևի վերջնականապես հիասթափեցրեց Ամենահրաշալի աղջկան, թե չէ ինչու՞ է նա այդպես լուռ ու տխուր քայլում ու ոչինչ չի հարցնում։ Ես էլ ոչինչ չեմ ասում, թեպետ ծովի չափ բան կա ասելու, բայց ձկան պես բերանս ջրով է լցված։ Անպայման ես նրա աչքին հիմա այնպես փոքր եմ երևում, գնդասեղի պես աննշան ու չընչին»։ Բայց, այ քեզ բա՜ն... Փողոցի խաչմերուկում, երբ մենք արդեն պետք է բաժանվեինք, Ամենահրաշալի աղջիկը դարձավ ինձ և մի հրաշալի ժպիտով ասաց.

— Այսօր հեռուստացույցով «Երկկենցաղ մարդը» են ցուցադրելու։

Գիտե՛մ,—ասացի ես։

— Կգա՞ս մեր տուն, միասին նայենք,—ասաց Ամենահրաշալի աղջիկը։

— Կգամ,—ուրախ ասացի ես։ Իսկ Աշխարհի ամենաօրինակելի տղան, չգիտեմ ինչու, շուռ եկավ և առանց որևէ բան ասելու, գնաց։

* * *

Եվ այսպես Աշխարհի ամենաօրինակելի տղան հեռացավ մեզանից։ Չգիտեմ ինչու, նա այլևս չի ուզում ընկերություն անել մեզ հետ։ Նա հիմա ոչ ոքի հետ ընկերություն չի անում։ Եվ մենք այժմ երկուսով ենք՝ ես և Ամենահրաշալի աղջիկը։ Միասին ենք դպրոց գալիս և միասին էլ տուն վերադառնում։ Բայց ես այնպես կուզեի, որ նա էլ մեզ հետ լիներ, նա՝ Ամենաօրինակելի տղան։ Նա հիմա այնպես մենակ է... Թվում է, թե նա ամենամենակ մարդն է ամբողջ աշխարհում։ Իսկ ես ուզում եմ, որ նա մենակ չլինի, որ մենք երեքով միասին տուն վերադառնանք դպրոցից և միասին նայենք աշխարհի բոլոր հետաքրքիր ու հրաշալի կինոֆիլմերը։

Եվ ահա մի օր, դասերը վերջանալուց հետո, երբ ես ու Ամենահրաշալի աղջիկը [illegible] նման ուրախ կատակելով տուն էինք վերադառնում դպրոցից, մեզ մոտեցավ Աշխարհի ամենաօրինակելի տղան և, մի տեսակ ընկճված ու շփոթված, ասաց.

— Թույլ տվեք ընկերություն անել ձեզ հետ։

— Ընկերությունը լավ բան է,—ասաց Ամենահրաշալի աղջիկը։

— Դրա համար թույլտվություն պետք չի,— ուրախացած ասացի ես,—արի՛ ու վերջ...

— Շնորհակալությու՛ն,—ասաց Աշխարհի ամենաօրինակելի տղան։

— Խնդրե՛մ,—ասացի ես։

# Ձմռան գալը

ՀՈՎՀԱՆՆԵՍ ԳՐԻԳՈՐՅԱՆ

Շուտով ձմեռը մեզ հյուր է գալու,
Վերջին դեղինքն են ծառերը թափել
Ու վեճ են անում՝ ո՞ւմ է սազելու
Ձյունե զգեստը, որ պիտի հագնեն։
Եվ քամին հմուտ դերձակի նման

Ձափսերն է առնում բոլոր սարերի,
Որ հենց ձյունը գա, ամենքի համար
Մի-մի սպիտակ վերարկու կարի...
. . . . . . . . . . . . .
Շուտով ձմեռը մեզ հյուր է գալու.

# ՀՐԱՇԱԼԻ ԱՅԳԵՊԱՆԸ

*ԳՐԻԳՈՐ ՄԱՋՄԱՆՅԱՆ*



*Նվիրում եմ Հոկտեմբերյանի շրջանի Մարգարա գյուղի կոլտնտեսության այգեգործ Բենիամին Թոռոսյանին։*

Ամբողջ շրջանում ո՞վ չի ճանաչում
Հմուտ այգեպան իմ քեռուն բարի,
Նրա ձեռքով է այգին կանաչում,
Առատ բերք տալիս մեզ ամեն տարի։

Դեռ ոչ մի պոետ չի երգել նրան,
Բայց վազերն ահա նրան են երգում։

Չէ՞ որ փոխանցիկ դրոշն հուրհրան
Նրանց օղակն է պահում իր ձեռքում։

Երբ մութ ամպերին աշունը հեծած՝
Անձրև մաղելով գալիս է, անցնում,
Նրա նոխ այգին բարիքով լցված,
Ասե՛ք, մեզանից ո՞ւմ չի հիացնում։

Հնուց մտերիմ իր բահը ձեռքին՝
Գիշեր ու ցերեկ այգու մեջ շրջում,
Աշխատում է նա կրկին ու կրկին,
Ամեն մի վազը քրտինքով թրջում։

Իսկ թե հյուր գնաս, ծերունին բարի
Քեզ պատիվ կանի քաղցր խաղողով,
Ու հետո էլ սիրով կհյուրասիրի
Այդ խաղողից էլ անուշ խոսքերով։

*Երիտասարդ բանաստեղծ ՎԱՐԴԻՐԵՍ ԳԱՐԱԿՅՈԶՅԱՆԸ ծնվել ու մեծացել է Թուրքիայում։ Նա երազում էր բարձրագույն կրթություն ստանալ Սովետական Հայաստանում։ Կատարվեց նրա բաղձանքը. այժմ նա սովորում է Երևանում։*

*Տպագրում ենք Վ. Գարակյոզյանի բանաստեղծություններից երեքը։*

## ՏԱՆՏԻԿԻՆԸ

*Կարի տուփս ու՞ր է, ո՞ւր,*
*Եթե գիտես՝ շուտ ցցուր.*
*Ասեղ-դերձան վերցնեմ,*
*Մատիս մատնոց անցնեմ,*
*չափեմ-ձևեմ,*
*կտրեմ՝ կարեմ,*
*Իմ պուպրիկին տարեդարձին*
*Զեռք մը հագուստ հագցնեմ։*



## ՄԱՏԻՏՍ

*Գիշերները կքնանաս պայուսակիս մեջ.*
*Առտուները ե՞րբ կարթննաս։*
*Դպրոց կու գամ,*
*Պայուսակիս մեջ զիս կսպասես անհամբեր,*
*Մինչև վերջը մատներուս մեջ կխաղաս,*
*Մարդ կլինես, տուն ու ծառեր,*
*Շատ մը գնդակ, թռուցիկներ...*

*Դուն չըլլայիր՝*
*Ալ ես ինչո՞վ կգրեի*
*Մեր գեղեցիկ այբուբենով հատիկ-հատիկ*
*Իմ անունս՝*

*. . . . . . . .*

*Ազգանունս՝*



## ԾՈՎԻ ՄԵՋ

*Ի՞նչպես գտա—մի՛ հարցնեք.*
*Տախտակ մըն էր ճարեցի,*
*Եզերքները տաշեցի,*
*Նավակ մըն էր շինեցի։*

*Իսկ նավակիս ճիշտ մեջտեղը,*
*Մեծ մատիտ մը տնկեցի,*
*Իսկ մատիտիս երկու քովը*
*Ճերմակ լաթեր պրկեցի,*
*Առագաստանավ շինեցի,*
*Թևիս տակը դրի ելա՝*
*Ծով գացի,*
*Ծովին մեջը ալեակներով,*
*Նավս խաղա՛ց՝*
*Ե՛ս լողացի։*

# ԵՐԵՔ ԱՐՋՈՒԿ, ՄԻ ԱՆՄՈՌՈՒՔ ՁՄԵՌ ՊԱՊԻ

ՍԱՂԱԹԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

1.

Ցուրտ է, ցուրտ է, ձմեռ նորից,
Սառնամանիք համատարած.
Ձյունն է իջել սար ու ձորին՝
Ճերմակ սավանն իր բաց արած:

Սարի ուսից բուքն է փչում՝
Դաշտը առած թևերի տակ.
Մի թռչուն է անվերջ ճչում
Մութ անտառից չարագուշակ:

Ողջ անտառում այս ուշ ժամին
Այդ թռչունն է միայն արթուն
Եվ որջերում իրենց մթին
Գազաններն մտել են քուն:

Բայց այն ի՞նչ է.
Ո՞վ է գալիս.
Ո՞վ է այնտեղ
Կաղին տալիս:
Ո՞վ է գալիս
Հենված փայտին.

Արջուկները՝
Սառած այտին:
Մեկը Քոթն է՝
Մի ոտանի,
Մեկը Թոթն է՝
Միականի,
Երրորդն էլ, տե՛ս,
Քոթոթն է մեր՝
Ո՛չ թաթ ունի.
Ո՛չ էլ թևեր

Իսկ հետևից, իր ահագին
Գավազանը ձեռքին պահած՝
Ճերմա՛կ-ճերմա՛կ բուքը հագին՝
Մի ծերուկ է գալիս ահա:



Ձմեռ պապը
Կարծես լինի:
Բայց, ա՛յ հրաշք,
Մորուք չունի:
Թողած կաղանդ,
Տոն ու հանդես,
Տեսնես ո՞ւր է
Գնում այդպես՝
Հետը առած
Քոթին, Թոթին,
Չարաճճի
Մեր Քոթոթին...



2.

Մի հարցընող լինի այսպես,
Թե ինչո՞ւ եմ պատմում կեսից
Եվ ինչո՞ւ եմ մոռացել ես
Այն անպիտան, չար Վարդգեսին...

Վարդգես չի՞ հո, պատիժ է մի,
Մի իսկական կրակ ու ցեց:
Իրենց տանը նստած հիմի,
Ձայնը գլուխն է նա գցել.

— Տոնածառ եմ ուզում սիրուն,
Ուզում եմ մեծ գնդակ բերեք,
Խաղալիքներ՝ նոր ու փայլուն
Եվ արջուկները իմ երեք:

Ուզում եմ իմ Ձմեռ պապին,
Նորը բերեք, թե չեք գտնում,
Բերեք տնակ ինձ մեծ չափի,
Թե չէ՝ սրա մեջ չեմ մտնում:

Ասում է ու հետն էլ լալիս,
Մի հարցնող լինի սակայն,
Ի՞նչ է այդպես գլխին տալիս,
Երբ մեղավորն ի՛նքն է միայն:

Ո՞վ է պոկել
Ոտքը Քոթի,
Ո՞վ է հանել
Աչքը Թոթի,
Իսկ Քոթոթին
Ո՞վ է թակել,
Ո՞վ է այդպես
Այլանդակել:

Ձմեռ պապի մորուքը չեկ
Ո՞վ է այդպես տեղից հանել,
Ո՞վ է ամբողջ սենյակով մեկ
Խաղալիքներն այդպես ցանել:

Այդ բոլորը ի՛նքն է արել,
Դրա համար Ձմեռ պապին
Փախել է ու հետն էլ տարել
Քոթին, Թոթին ու Բոթոթին:

Եվ ինչքան էլ Վարդգեսը լա,
Խաղալիքներն էլ ետ չեն գա:

3.

Ցուրտ է, ցուրտ է, ձմեռ նորից:
Ճերմակ սավանն իր բաց արած՝
Ձյունն է իջել սար ու ձորին,
Ծածկել անտառն համատարած:

Անտառի մեջ, գետի ափին
Մի փայտաշեն տուն կա կանգնած,
Ու գնում է Ձմեռ պապին
Այդ տնակի ճամփան բռնած:

Ցուրտ է սաստիկ, սառնամանիք,
Բայց գնում է հենված փայտին,
Եվ սառել են արցունքները
Ցրտից շիկնած նրա այտին:

Տանում է նա արջուկներին
Դեպի տնակն այդ մենավոր,
Ուր գույնզգույն շորեր հագին՝
Տոնածառ կա մի լուսավոր:

Նա աչքերով ջինջ ու լազուր
Մի խելացի ու լավ տղա,
Որ Նոր տարուն է սպասում
Հայրիկի հետ անտառապահ:

Եվ նա անչափ կուրախանա,
Անտառապահ այդ լավ տղան,
Եթե հանկարծ Նոր տարվա հետ
Ձմեռ պապ ու արջուկներ գան:

Իսկույն կելնի,
Կառնի դանակ,
Թոթին մի նոր
Աչք կբանա:
Ոտք կշինի
Քոթի համար,
Իսկ Քոթոթին՝
Թևեր հարմար:

Ձմեռ պապին մի նոր մորուք
Նուրբ բամբակից նա կշինի,
Այնքան լավը, որ իր օրում
Ծերուկն հազիվ տեսած լինի:

Հետո կելնեն և իրար հետ
Պար կբռնեն, կուրախանան...

. . . . . . . . . . . .

Իսկ Վարդգե՞սը... լալիս է դեռ...
Հենց այդպե՛ս էլ պետք է նրան:

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ





## ՁՄԵՌՆԱՄՈՒՏ

ԳՈՒՐԳԵՆ ՓԻԼԻԿՅԱՆ



Ամպը ծածկել է դեմքը երկնքի.
Վերջին հոտն արդեն իջնում է սարից.
Հեռու ծմակում ծագը եղնիկի
Կռացած ջուր է խմում աղբյուրից:
Կարմիր մասրենին կորացել է լուռ.
Հանգչում է ցողը նրա թերթերին.

Բայց ժայռը նրան գրկել է ամուր.
Որ կուլ չգնա աշնան հողմերին:
Ճերմակ են հագել լեռները պարթև
Առուն էլ տեղ-տեղ սառել է ցրտից.
Իսկ լուսաբացի մուժի պես թեթև
Խարույկի ծուխն է ելնում անտառից:

# Այդ գաղտնալից գիշերը

ԼՈՒՍԻԿ ԲԱՌՆԱԿՅԱՆ

Նկ. ԱՐՄԻՆԵ ԳԱԼԵՆՑԻ

... Ձեզ հետ էլ, երեխաներ, երևի նույնը պատահել է. առավոտյան բաց ես անում աչքերդ և բարձի վրա տեսնում կամ գեղեցիկ խաղալիքներ, կամ ասեղնագործ թաշկինակ և կամ՝ մետաքսյա լայն ժապավեններ ու ինչ իմանամ, թե էլ ինչ մի լավ բան: Այդպես էլ ամեն անգամ լինում է ինձ հետ:

— Վա՜յ, մայրիկ ջան, ինչ լա՜վն է,— առավոտյան ուրախացած բացականչում եմ ես:

— Ձմեռ պապին է բերել,— հանդիսավոր ասում է մայրիկը:

Ես զարմանում եմ ու չեմ ուզում հավատալ, իսկ մայրիկը շարունակում է.

— Ձմեռ պապին բոլոր լավ բալիկներին նվերներ է բերում:

— Ե՞րբ է բերել, որ ես չեմ տեսել...

— Գիշերը, երբ դու քնած էիր:

— Իսկ ինչու՞ է նա գիշերները գալիս:

— Այդպես է. նա գալիս է այն պահին, երբ հին տարին գնում է...

— Իսկ որտե՞ղ է ապրում նա:

Մայրիկս զգում է, որ ես էլի եմ շարունակելու, ուզում է գլուխն ազատել, բայց ես վազում եմ նրա հետևից և քաշում թևքից.

— Մայրի՛կ, մեր բակի Գագոն ասում է, թե իսկական Ձմեռ պապի չկա, որ այդ նվերները մայրիկներն են գնում:

Մայրիկս կարծես ուզում է բարկանալ, հետո ժպտում է.

— Ի՞նչ կա որ, եթե Ձմեռ պապին չի հասցնում, նրան օգնում են մայրիկները:

— Մայրի՛կ, իսկ քեռին ասում է՝ կա իսկական Ձմեռ պապի և ով տեսնի նրան, աշխարհի ամենաերջանիկ երեխան կլինի:

— Կարող է պատահել...

— Մայրի՛կ, ասում են, իսկական Ձմեռ պապին կարող է ամեն բան անել: Նա կարող է առանց ինքնաթիռի թռչել օդի մեջ...

— Ի՞նչ կա որ, կարող է...

— Երանի ես տեսնեի նրան: Քեռին ասում է՝ ինչ որ խնդրես, կարող է կատարել:

— Հետաքրքիր է, դու ի՞նչ կխնդրեիր:

— Ե՞ս,— զարմանում եմ, այնքան շատ բան կա խնդրելու, չգիտեմ որն ասեմ:

Ես սիրում եմ տարեմուտի գիշերը...

Այդ օրն ամեն ինչ ուրիշ տեսակ է... հայրիկը, մայրիկը, տատիկս, մեծ քույրիկս, բոլորն էլ ուրիշ տեսակ են՝ շատ բարի, ուրա՛խ-ուրա՛խ և շատ գեղեցիկ:

Ահա մեր մեծ սենյակի լամպն այսօր ավելի պայծառ է վառվում, և ամեն ինչ ողողվել է լույսով: Մյուս սենյակում վառվում են տոնածառի գույնզգույն լամպերը, խաղալիքների ստվերներն արտացոլվում են պատին:

Ինչ լա՜վ է, երբ անհամբեր սպասում ես...

Նստում եմ փափուկ բազմոցին ու նայում լույսերին... Լույսերի մեջ լողում են խաղալիքները և հանկարծ ինձ թվում է, թե կանաչ եղևնու ճյուղերի վրա բազմած թռչուններն ու կենդանիները սկսում են շարժվել: Երգում են սոխակները, ծիտիկներն ուրախ թռչկոտում են թփից-թուփ... Աշխատում են տրամվայներն ու տրոլեյբուսները: Փոքրիկ տնակներից ծուխ է բարձրանում: Միայն Ձմեռ պապին է մնացել կանգնած: Աչքով եմ անում նրան ու սեղմում էլեկտրական կոճակը: Ձմեռ պապին, որ կանգնած էր անիվավոր սայլակի վրա, սկսում է պտտվել տոնածառի շուրջը, բայց հանկարծ ինձ թվում է, թե սկսում է նրա գլուխը

պտտվել և քիչ է մնում վայր ընկնի, իսկույն քանդում եմ նրա ոտքի շղթաները՝ էլեկտրական լարերը, թող գնա ազատ շրջի՝ ուր որ կամենա....

Ես վախեցած նայում եմ դռան կողմը, գիտեմ, ուր որ է, հիմա ներս կմտնի քույրիկս ու կբարկանա ինձ վրա, կարող է գործն ավելի բարդանա՝ հասնի մայրիկիս կամ գուցե և հայրիկիս: Ինչ ուզում է լինի... Այ, եղևնու ծայրին նստած է մի փոքրիկ աղջիկ, գուցե նա շատ է ուզում տեսնել Ձմեռ պապիին...

Սիրում եմ, երբ ժամացույցը խփում է տասներկու անգամ: Այդ օրը ժամացույցն էլ սովորականի նման չի աշխատում, ժամերը խառնվում են, երբեմն մի ժամը տևում է չորս ժամի չափ, երբեմն անցնում է ինչպես վայրկյան... Իսկ երբ վրա է հասնում տասներկուսը, թվանշանները բոլորը ոտքի են կանգնում և անհամբերությամբ սպասում զանգին: Ահա մեծ սլաքը ծածկում է փոքրին, թվանշանները կամաց խոնարհում են գլուխները... ամբողջ սենյակը, ամբողջ աշխարհը լցվում է զանգի տասներկու զարկերով...

Բայց իմ քունն այնպես է տանում, որ ես այլևս չեմ կարողանում նայել շուրջս:

— Եթե չես կարող մինչև տասներկուսը դիմանալ, գնա քնի՛ր,— ասում է մայրիկը:

— Կդիմանամ:

— Դե լավ, գնա մյուս սենյակը՝ հայրիկի ու Սուսաննայի մոտ:

Ես շրջում եմ սենյակից-սենյակ, որ քունս փախչի: Բայց չի փախչում, քաշում է ինձ, քաշում դեպի անկողին:

Տոնածառի գույնզգույն լույսերի տակ փակվում են աչքերս...

... Ահա և մեր բակի բլրակը, այնքան է բարձրացել, այնքան, որ ծայրը քսվում է երկնքին, մենք՝ երեխաներս, բարձրանում ենք վե՛ր-վե՛ր, եթե մեզ հաջողվի հասնել գագաթին, կբարձրացնենք ձեռքներս և աստղերը կքոնենք... բայց բարձրանալը շատ դժվար է, սահում են ոտքներս, առաջ գնալ չենք կարողանում... Այս ի՞նչ է, ես նստել եմ Գագիկի սահնակը, բայց ինչպե՞ս է եղել, որ նա թույլ է տվել:

— Սպիտակ, բամբակի նման մի թեթև ձեռք իջնում է բարձիս վրա, ես բռնում եմ ձեռքը, նրա երկար մորուքը քսվում է դեմքիս...

— Դու իսկական Ձմեռ պապի՞ն ես,— հարցնում եմ ես:

Նա գլխով է անում:

Ես ուրախացած թռչում եմ տեղիցս:

Ծերունին նստում է: Առանց ներողություն խնդրելու, առանց հարցնելու նստում եմ ծերունու գիրկը: Ամուր գրկում եմ նրա գլուխն ու շոյում երկար մորուքը:

— Թո՛ղ ինձ,— ասում է նա,— ես շտապում եմ, ինձ սպասում են երեխաները:

— Չե՛մ թողնի, դու իմն ես...

— Երեխաներն ինձ սպասում են...

— Թող սպասեն...

Ներս է մտնում տատս.

— Աղջի, չե՞ս ամաչում, նստել ես հոգնած ծերունու գիրկը,— ասում է նա:

— Ի՞նչ ես ուզում, թոռնիկս, ասա՛, ես շտապում եմ,— շշնջում է ծերունին:

— Իսկույն գլխի եմ ընկնում, որ պետք է նրանից բան խնդրել:

— Ի՞նչ ասեմ, ո՞րն ասեմ, այնքան շատ բան եմ ուզում...

— Միայն մեկն ասա,— արդեն նեղացած ասում է ծերունին:

— Մե՛կը... ա՛յ, ես ուզում եմ, որ դու միայն մեր տուն գաս... ամեն օր:

— Իսկ մյուս երեխանե՞րը... Նրանք էլ քեզ նման ինձ են սպասում...

— Ի՛նչ անենք...

— Դժվար բան ես պահանջում:

— Չե՛մ, ես այդպես եմ ուզում:

— Ինչպե՞ս, չէ՞ որ ես անցնում եմ սառած օվկիանոսների վրայով, ուր այնպե՛ս ցուրտ է, այնպե՜ս ցուրտ, որ ձեռքերս ու ոտքերս դաղվում են ցրտից...

— Հետո՞...

— Հետո ես անցնում եմ արևի, աստղերի մոտով, ուր այնպե՛ս տաք է, կրակ է թափվում...

— Իսկ եթե այդքան դժվար է ճանապարհդ, ինչու՞ ես չարչարվում, գալիս...

Ծերունին դառը ժպտաց.

— Չէ՞ որ երեխաները սիրում են ինձ... և սպասում...

— Ի՞նչ անենք...

— Լավ մտածիր, գուցե ե՞տ վերցնես պահանջդ, ծանր բան կլինի նաև քեզ համար:

— Ինձ համար շատ լավ բան կլինի, այ, բոլոր երեխաներին կասեմ, որ Ձմեռ պապին միայն ինձ է սիրում, միայն ինձ...

— Մի՞թե դու չես խղճում ծերուկիս...

— Դու դիմացկուն պապիկ ես երևում, կգաս, ամեն օր կգաս...

Ծերունին տրտնջալով ոտքի կանգնեց, թափ տվեց վրայի ձյունը և առանց ցտեսություն ասելու՝ հեռացավ...

— Անահի՛տ, Անահի՛տ,— կարծես հորի միջից մի ձայն եմ լսում:

Վազում եմ մյուս սենյակը և ի՞նչ եմ տեսնում, ա՛յ քեզ զարմա՛նք... Նստած է մի կին, ասես ինչ որ բանով հիշեցնում է մայրիկիս, բայց մայրիկս այնպես ջահել է՝ մազերը սև, իսկ նա բոլորովին պառավ է, սպիտակ գլխով, կնճիռներով ծածկված



դեմքով... Բազմոցին թիկնած է մի ծեր մարդ՝ հայրիկիս ծխամորճը ձեռքին, նա էլ ինչ-որ բանով հիշեցնում է հորս, նա նույնպես շատ ծեր է, իսկ հայրս ջահել... իսկ անկողնու մեջ պառկած կինը այնքա՜ն ծեր է, այնքա՜ն ծեր, որ երևի մի կողքից մյուսը դառնալ չի կարողանա...

— Անահիտ, մի բաժակ ջուր տուր, ասում է պառկած պառավը:

Ես բաժակով ջուր եմ տալիս նրան:

Նրա ձեռքերը դողում են, և չի կարողանում ջուրն ամուր պահել, մեծ մասը թափվում է հատակին:

Ես դժգոհ դեմքով նայում եմ մայրիկին նմանվող կնոջը:

Նա մռայլ հայացքով նայում է ինձ և ապա ասում.

— Ի՞նչ ես բարկանում, նա քո տատն է, շուտ մաքրի՛ր հատակը...

— Իսկ ինչու՞ են դողում ձեռքերը, — հարցնում եմ ես:

— Հապա ի՞նչ էիր կամենում, նա արդեն հարյուր քսան տարեկան է:

— Ո՛չ, իմ տատն ընդամենը վաթսուն տարեկան է...

— Ճիշտ այդպես էր սրանից երկու ամիս առաջ:

— Ուրեմն հիմա պետք է լինի վաթսուն տարեկան և երկու ամսական:

— Երանի այդպես լիներ:

— Իսկ ինչու՞ այդպես չի:

— Որովհետև, որովհետև...

— Չլինի՞ դուք էլ իմ մայրիկն եք...

— Չե՞ս ցանկանում, որ ինձ նման ծեր մայրիկ ունենաս:

— Ո՛չ, իմ մայրիկը...

— Ահա, այն ննջող ծերուկն էլ քո հայրն է...

— Իմ հայրի՞կը...

— Ի՛նչ է, չե՞ս ուզում, հա՛...

— Չե՛մ ուզում, չե՛մ ուզում, — սկսում եմ լաց լինել ես...

— Բայց դու ես ցանկացել, որ Ձմեռ պապին միայն քեզ մոտ գա... նա էլ, ահա երկու ամիս է, ամեն օր ջրի ու կրակի միջով անցնելով՝ գալիս էր մեր տուն:

— Իսկ դուք ինչու՞ այդպես ծերացաք:

— Ծերունին իր հետ երեխաներին նվերներ չէր բերում, իր հետ բերում էր տարիներ ու ավելացնում մեր տարիքի վրա...

... Ես ուզում եմ գոռալ, ձայնս դուրս չի գալիս, ուզում եմ քայլել, շարժվել չեմ կարողանում, նայում եմ՝ հագիս մեր բակի Գագոյի ձմեռային մորթե վերարկուն է, գլխիս՝ նրա գլխարկը, ոտքերիս՝ նրա կոշիկները...

— Անահի՛տ, վե՛ր կաց, Անահի՛տ, Նոր տարի է այսօր, իսկ դու քնել մնացել ես, վե՛ր կաց, հիմա կգան ընկերներդ, — թևիցս քաշելով արթնացնում է մայրիկս:

Բաց եմ անում աչքերս և փաթաթվում մայրիկիս վզով. ի՜նչ լավ է, մայրիկս այնպես ջահե՜լ է, այնպես գեղեցի՜կ, սև, գանգուր մազերով...

Արագ-արագ հագնում եմ շորերս, հիշում եմ երազս ու ամաչում: Լավ է, որ ես երազում էի միայն այդպես: Թող Ձմեռ պապին բոլոր երեխաներին տեսնելուց հետո միայն՝ մեր տուն գա, իսկ եթե հոգնած լինի, թող չգա, թող պառկի ու մի լավ հանգստանա:

# ՏՂԱՆ ՀԱՎԱՏՈՒՄ Է...

ՎԱՀԱԳՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ

Նկ. ՄԱՐՏԻՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

Նրանք նստած էին ամենավերջին նստարանի վրա։ Դա ութերորդ դասարանն էր, իսկ նստարանը գըտնըվում էր դասարանի ամենահեռավոր անկյունում։ Տղան արդեն մեկ ամիս էր, ինչ նստում էր այստեղ, իսկ աղջիկը միայն այսօրվանից, թեև արդեն հոկտեմբեր ամիսն էր։

«Ուրիշ դպրոցից է փոխադրվել» — նորից հիշեց տղան։

Նա նստել էր, արմունկները հենած նստարանին, բռունցքները՝ կզակի տակ։ Նա կարծես ուրիշ կողմ էր նայում, բայց տեսնում էր աղջկան։ Աղջկա աչքերը համարյա կապույտ էին, իսկ մազերը ավելի շուտ՝ խարտյաշ, քան՝ սև։ Այդ բանը տղան նկատել էր քիչ առաջ և հիմա կարծես նորից էր ուզում համոզվել դրանում։ Աղջիկը զգաց տղայի հայացքը, բայց չնայեց ու միայն շարժվեց տեղում։ Տղան անմիջապես թեքեց գլուխը։ Նա նորից նստած էր՝ արմունկները հենած նստարանին, բռունցքները՝ կզակի տակ և գրատախտակին էր նայում։

Տղան բարձրահասակ էր։ Բոլորից բարձրահասակը դասարանում և ամենից լավ բասկետբոլ խաղացողը։ Բայց դա միայն անցյալ տարի, մինչև այն օրը, երբ տանը ասացին.

— Այլևս բասկետբոլ չես խաղա։

Խելքդ բոյիդ ես տվել, — ասացին դպրոցում.— իսկ գլուխդ...

Տղան մնացածը չէր ցանկանում հիշել։ Նա բասկետբոլ չխաղաց, բայց մնաց նույն դասարանում։ Նախկին դասընկերները հիմա իններորդ դասարանում էին և արդեն տուն էին գնում, երբ ինքը նոր միայն գալիս էր դպրոց։ Նրանք հանդիպում էին դպրոցի բակում, ու երբեմն տղային այնպես էր թվում, որ ոչինչ չի փոխվել։ Հաճախ տղաներից մեկը ասում էր.

— Հիշու՞մ ես, անցյալ տարի մենք նույնիսկ տասներորդ դասարանին տարանք։

Այո, տղան հիշում էր ու տխրում։ Հետո նա մտնում էր դպրոց և, երբ բարձրանում էր աստիճաններով, ընկերները արդեն քայլում էին փողոցով։

Անցյալ տարի նույնպես տղան նստում էր վերջին նստարանին։ Բայց դա պատժի նման մի բան էր։ Նա բոլորից բարձրահասակն էր և վերջին նըստարանից էլ գրատախտակը տեսնում էր նույնքան լավ, որքան առաջին նստարանին նստողները։

Հիմա բոլորովին ուրիշ էր։ Հենց առաջին օրը նա ամաչում էր գալ դասարան և ուշացավ։ Երբ ներս մտավ, ազատ էր միայն վերջին նստարանը։ Տղային թվաց, որ դա հատուկ իր համար է և առանց թույլտվություն խնդրելու՝ նստեց այդտեղ։

— Հենց առաջին օրը շնորհքդ ցույց տվեցիր.— ասաց ուսուցիչը։

Հաջորդ ժամին մյուս ուսուցիչը նկատողություն չարեց, բայց նկատեց նոր աշակերտի հայտնվելը.

— Երկտարեցի՞ ես։

Տղան, որքան հիշում էր, ոչինչ չպատասխանեց։ Ոտքի կանգնեց ու նստեց, երբ ուսուցիչը գլխով արեց բավարարված։

Եվ տղան ամաչում էր իր հասակի համար։ Նա զգում էր, որ բոլորը իր բարձրահասակ լինելը վերագրում են նույն դասարանում մնալուն և ամբողջ սրտով ցանկանում էր փոքրանալ ու աննկատելի մնալ հենց այստեղ, վերջին նստարանին։

Մի ամբողջ ամիս նա մենակ էր նստում։ Հետո եկավ աղջիկը։ Նա շիկնած կանգնել էր գրատախտակի մոտ, մինչև ուսուցիչն ասաց.

— Նստի՛ր։

Միակ ազատ տեղը տղայի կողքին էր, և սա դըժգոհությամբ մի կողմ քաշվեց։

Երկար ժամանակ մենակ նստելով՝ նա սովորել էր դրան և հիմա իրեն զգում էր այնպես, ինչպես տանտերը՝ անկոչ հյուրին տեսնելով։ Հետո նա նայեց աղջկան և նկատեց, որ աղջկա աչքերը համարյա կապույտ են, իսկ մազերը ավելի շուտ՝ խարտյաշ, քան սև։ Եվ տղան ցանկացավ խոսել, բայց չգիտեր ինչ ասել և լռում էր ամեն անգամ։

Դասերից հետո տղան տուն գնաց։ Տունը բավական հեռու էր, իսկ իրենց դասարանից ոչ ոք չէր ապրում այդ կողմում։ Նա թեքվեց մեծ փողոցը և մտավ մի ավելի նեղ, բայց երկար փողոց, մեկը այն փողոցներից, ուր տները հին են, իսկ նորերը կառուցվում են դեռ։

Հանկարծ նա տեսավ աղջկան։ Աղջիկը քայլում էր իրենից առաջ, իսկ փողոցում գրեթե մարդ չկար։

Տղան դանդաղեցրեց քայլերը։ Մի ներքին ձայն նրան հուշեց, որ եթե հասնի աղջկան, ապա անհարմար է առաջ անցնել։

«Նրբանցքում կթեքվի,— մտածեց նա.— Նրբանցքից այն կողմ ես ճանաչում եմ բոլորին։ Նրբանցքում կթեքվի»։

Բայց նրբանցքը անցան, իսկ աղջիկը շարունակում էր քայլել ուղիղ։

«Հավանորեն նոր շենքում են բնակարան ստացել»— անցավ տղայի մտքով։

Դանդաղ քայլերը տղային բարկացրեց, և նա շու-

տով հավասարվեց աղջկան։ Նա առաջ կանցներ եթե այդ պահին չնայեր ու չտեսներ աղջկա հայացքը։

Առաջինը աղջիկը ժպտաց։ Դա մի ակամա ժպիտ էր, որով մարդիկ դիմավորում են իրենց համար հաճելի, բայց դեռևս ոչ այնքան մոտ մարդկանց։ Տղան նույնպես պատասխանեց ժպիտով և հասկացավ, որ պետք է դանդաղեցնել քայլերը։

Նրանք քայլեցին միասին և լուռ էին։ Տղան ըզդիկներ սիրու՞մ է, թե՞ ոչ։ Բայց հավանորեն սիրում էր, քանի որ ասաց.

— Սա լավ փողոց է։ Թեև կենտրոնական չէ, բայց խաղաղ է։

Նրանք շարունակեցին քայլել միասին։ Սա առաջին անգամն էր, որ տղան մենակ էր լինում մի աղջկա հետ, որը համարյա կապույտ աչքեր ուներ և մազեր, որ ավելի շուտ խարտյաշ էին, քան սև, եվ տղան շփոթվում էր։ Նա զգում էր անսովոր



զում էր, որ պետք է խոսել և երկրորդ անգամ ժպտաց։

— Նոր շենքու՞մ ես ապրում,— ստիպված հարցրեց նա։

— Այո՛,— աղջիկը գլխով արեց.— երեկ ենք փոխադրվել։

— Մենք այնտեղ վաղուց ենք ապրում, արդեն տասը տարի է,— և զգալով աղջկա զարմանքը՝ արագ ավելացրեց.— Մենք նոր շենքում չենք ապրում։ Մեր շենքը հին է։ Թեև երեք հարկանի է, բայց հին է։

Նրան թվաց, որ ձեռքերը շատ է թափահարում, և դրեց գրպանը։

— Գիտեմ,— ասաց աղջիկը,— այդ շենքի բոլոր պատշգամբներում ծաղիկներ կան։ Ես ծաղիկներ շատ եմ սիրում։ Մայրիկն էլ։ Շուտով մեր պատշգամբում նույնպես ծաղիկներ կլինեն։

Տղան մտածեց ու չկարողացավ հիշել, ինքը ծամի բան, որ վախեցնում, միաժամանակ ուրախացնում էր նրան։ Երբ հիշեց, որ իրենք ծանոթ չեն, ասաց.

— Իմ անունը Կարեն է։

— Գիտեմ,— ծիծաղեց աղջիկը։

Տղան զարմացավ ու հիշեց, որ իրեն այսօր դաս են հարցրել։

— Իմ անունը Լիլիթ է, իսկ մայրիկս Լիլի է ասում։ Նա գտնում է, որ այդպես ավելի կարճ է ու գեղեցիկ։

Տղան համաձայնվեց մտքում։ Հետո նրանք հասան նոր շենքին ու կանգնեցին։

Ցտեսություն։

Երկուսն էլ ասացին այս, և աղջիկը առաջինը տուն հասավ։

Հաջորդ օրը հանդիպեցին դպրոցում։ Տղան չէր զգացել, թե որքան շուտ է եկել, և դասարանը ամայի գտավ։ Հետո եկավ աղջիկը, և երկուսն էլ զար-

մացան, երբ բարևեցին ինչպես հին ծանոթներ։ Տղան հիշեց աղջկա անունը, կրկնեց մտքում ու հասկացավ, որ կան անուններ, որոնք գեղեցիկ են, իսկ այս մեկը երևի գեղեցիկ է բոլորից։ Տղան զարմանում էր, թե ինչպես է ինքը այդքան ժամանակ մենակ նստել և ինչպես է անցել այդ մեկ ամիսը։ Նա մեծ ցանկություն ուներ որևէ բանով օգնել աղջկան։ Ինքը ավել գրիչ ուներ և ամբողջ սրտով կցանկանար, որ աղջիկը իր գրիչը մոռացած լիներ տանը։

Ուսուցիչը հանեց տետրակները։

— Բոլորը լավ են գրել, ասաց, բացի մեկից։

Նա չասաց, թե ով է այդ մեկը, և տղայի սիրտը սեղմվեց։ Եթե այդ մեկը ինքը լիներ, ապա դրանից ավելի մեծ հարված չէր կարող լինել տղայի համար։ Նա հիշեց իր երկտարեցի լինելը ու գիտեր, որ միայն աղջիկը չգիտե այդ մասին և ցանկանում էր, որ երբեք էլ չիմանա։ Թե ինչու՝ նա իրեն հաշիվ չէր տալիս դրա համար, միայն թե չիմանա։ Եվ տղան վախենում էր, թեև հայոց լեզվից միշտ բարձր էր ստացել։

Հետո նա թեթևացած շունչ քաշեց. «Չորս» էր ստացել։ Ու երբ աղջիկը մոտեցրեց գլուխը և թեքվեց տետրակի վրա, տղան ունեցավ մի անսովոր, հավատի և ուրախության, մեծ գյուտ արած մարդու զգացում։ Մի մարդու, որ կարծում է, թե մի բան լավ է ճանաչում և պարզվում է, որ ամենալավը, ամենագեղեցիկն ու թանկագինը չի ճանաչել։ Եվ տղան զգաց, որ աղջկա հետ էլ կարելի է լինել այնպես, իրեն զգալ այնպես, ինչպես ամենամոտ ընկերոջ հետ։ Բայց տղան այդպիսի բառեր չգիտեր։ Նա կարող էր խոսել ֆուտբոլի, մի որևէ ուրախ բանի մասին և դրանով արտահայտել իր բոլոր զգացմունքները։

Եվ նա դասամիջոցներին շատ բաներ պատմեց։ Աղջիկը ևս։ Նրանց պատմածները այն զարմանահրաշ պատմություններից էին, որ նատարվում են միայն մանկության տարիներին։ Եվ նրա՛նք հիմա իրար ավելի լա՛վ էին ճանաչում ու հասկանում, քան շատերը նրանցից, որ տաս և ավելի տարիներ միասին են սովորում։

Վերջին դասը ֆիզկուլտուրա էր, մի բան, որ տղան շատ էր սիրում։ Եվ այստեղ էլ պատահեց այն, ինչից այնքան վախենում էր նա։ Կիրակի օրը դպրոցական սպարտակիադան էր և ուսուցիչը կազմում էր բասկետբոլ խաղացողների ցուցակը։ Հերթը տղայինն էր։

Դու այս տարի մնացիր, այնպես չէ՞, հարցրեց նա, թեև լավ գիտեր, և ավելացրեց.— Ազգանու՞նդ։

Լարվածությունից տղան չկարողացավ պատասխանել։

— Ազգանու՞նդ։

Տղան ասաց ազգանունը։ Եթե այդ պահին աղջիկը մոտ լիներ, տղային կթվար, որ ամեն ինչ ասվեց միայն նրա համար, որ աղջիկը լսի։ Բայց աղջիկը հեռու էր։

— Կգաք ժամը ութին։

Տղան ըմբոստանալու ցանկություն ունեցավ։ Նա ուզեց գոռալ, որ չի գա։ Բայց զսպեց իրեն և մըտածեց. «Չեմ գա»։

Երբ աղջկա հետ տուն էին գնում, տղան ինչ-որ բանում մեղավոր զգաց իրեն։ Նրան թվաց, թե ինքը խաբում է աղջկան։ Եթե նա իմանա, չի քայլի իր հետ, և վախենում էր, որ նա վերջ ի վերջո կիմանա։ Իսկ աղջիկը խոսում էր, ինչ-որ ուրախ բան էր պատմում և ծիծաղում։

Մյուս օրը, երբ տղան դուրս եկավ տնից, իրենց տան դիմաց, նոր շենքի մոտ տեսավ աղջկան։ Նա չհասկացավ, աղջիկը իրե՞ն էր սպասում, թե՞ պարզապես կանգնել էր։ Այսինքն, դա նրան հարկավոր էլ չէր, բավական էր, որ տեսավ աղջկան։

Նրանք քայլեցին դպրոց տանող ճանապարհով։ Երբ խոսում էին մի բանի մասին ու լռեցին, տղան ասաց.



Լիլի՛թ։

— Ի՞նչ։

Աղջիկը հարցրեց այնպիսի պարզությամբ և այնպես մաքուր նայեց տղայի աչքերին, որ սա անմիջապես որոշեց։

— Ես այս տարի մնացի։ Հասկանու՞մ ես, նույն դասարանում։

Իսկ աղջի՞կը։ Նա ամբողջ սրտով ցանկացավ այդ լավ, այդ սիրելի դարձած տղայի համար ստել։

## ԱՌԱ՛ՆՑ ԽՈՍՔԻ...







Նկ. ՎԱԶՐԻԿ ԳԱԲՐԻԵԼՅԱՆԻ

— Հայրիկս էլ է մի տարի մնացել նույն դասարանում, — ասաց. — Նա հիմա ինժեներ է։ Դա ոչինչ չի նշանակում։

Հետո կրկնեց.

— Դա ոչինչ չի նշանակում։

Ուրիշ դեպքում, եթե հարցնեին, նա հազիվ թե իմանար, ինչպես է սովորել հայրը և գուցե նույնիսկ զարմանար, երբ լսեր, որ նա էլ է սովորել։ Իսկ հիմա աղջիկը ստեց, հավատալով ոչ թե ստին, այլ կատարվածի ողջ գեղեցկությանը։

Տղան լուռ էր։ Իսկ աղջիկը նորից խոսեց։ Նա այդ արեց ինքնաբերաբար, որովհետև այդպես էր ցանկանում սիրտը։ Հետո նա հիշեց դպրոցը։

— Դու բասկետբոլի թիմի՞ց ես։

— Այո՛։

— Իսկ ես՝ վոլեյբոլի։ Դու ինձ համար կցավես, իսկ ես՝ քո։ Լա՞վ։

— Ես չեմ խաղալու, — ասաց տղան։

— Ես մի տարի ուշ եմ դպրոց գնացել, — ասաց աղջիկը, — դու կխաղաս։

— Ո՛չ։

Սա արդեն հնից էր մնացել, և տղան պատրաստ էր զիջել։

— Խաղա՛, — կրկնեց աղջիկը, — ես շատ եմ ուզում։

Եվ տղան ժպտաց հենց նոր ծնված մի ժպիտով։

— Կխաղա՛մ, — ասաց, — կխաղամ, Լիլի՛։

Նա կանգնել էր կարմրած ու հաղթած։ Անցորդներից ոչ ոք չնկատեց ու չհասկացավ, թե ինչ արժեր տղայի համար այդ փոքրիկ «թ»-ի դուրս նետելը։ Դա հաղթանակն էր իր դեմ և կյանքի առաջ։ Մարդկանց համար շատ սովորական էին այդ տղան և կապույտ աչքերով ու խարտյաշ մազերով աղջիկը, որ ժպտում էին աշխարհին։

Հանկարծ աղջիկը հիշեց, որ ուշ է։

— Վազե՛նք, — ասաց նա։

Նրանք վազեցին, և մարդիկ ու մեքենաները սովորականից ավելի արագ ու թեթև էին անցնում։ Արդեն դպրոցի մուտքի մոտ աղջիկը ծիծաղեց մի ծիծաղով, որ երջանկության նշան է։ Տղան էլ երջանիկ էր և անզուսպ ցանկություն ուներ բարձրանալ՝ երեք-չորս աստիճան միանգամից թռչելով։

Դպրոցում օրացույց չկար։ Եթե լիներ, այն ցույց կտար, որ հոկտեմբեր ամիսն է։ Բայց երբեմն այնպես է լինում, որ սեպտեմբերի մեկը սկսվում է հոկտեմբերից։

# ՋԵԼՍՈՄԻՆՈՆ ԽԱԲԵԲԱՆԵՐԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ



ՋԱՆՆԻ ՌՈԴԱՐԻ

Նկ. ԿԱՐԵՆ ՍԱՐԳՍՅԱՆԻ

## ԳԼՈՒԽ ՏԱՍՆԵՐԵՔԵՐՈՐԴ

Կաղլիկ-կատուն երբ իմացավ, որ Բանանիտոն դարձել է մինիստր, որոշեց գնալ նրա մոտ: Բայց ուրբաթն ավելի շուտ էր եկել, քան շաբաթը:

— Եթե ուզում ես նկարչին տեսնել, պիտի գըտնես գժանոց,— ասացին նրան ոստիկանները:

— Բայց քեզ ո՞վ կթողնի, որ ներս մտնես: Ա՜յ, եթե գիժ լինեիր...

Սակայն Կաղլիկ-կատուն գերադասեց ուրիշ ճանապարհով խելագարանոց մտնել:

— Թաթիկնե՛րս, չէ՞ որ դուք հիմա չորս հատ եք և ավելի ճիշտ կմագլցեք պատերով,— ասաց նա: Ասաց ու գործի անցավ:

Խելագարանոցը գտնվում էր մի հսկայական, մըռայլ շենքում, որն ավելի շուտ բերդի էր նման: Նրա շուրջը պարսպի երկարությամբ ջրով լի փոս կար: Կաղլիկ-կատուն ստիպված մի փոքր թրջվեց: Նա սուզվեց ջրի մեջ և լողալով անցավ փոսը: Հետո նա մագլցեց պատով և նետվեց առաջին բաց պատուհանից ներս: Երկար որոնումներից հետո նա վերջապես գտավ այն խուցը, որտեղ բանտարկված էր Բանանիտոն:

Նկարիչը, գլուխը դրած ձեռքերին, հանգիստ քնած էր և երազում տեսնում էր այն սքանչելի կտավները, որ նա ապագայում պետք է նկարեր: Հանկարծ այդ նկարներից մեկի վրա մի դատարկություն հայտնվեց և գեղեցիկ ծաղկեփնջի միջից երևաց մի կատվի գլուխ, որը մլավում էր իսկ և իսկ Կաղլիկ-կատվի նման: Բանանիտոն արթնացավ և, մի հայացք գցելով դռան կողմը, հասկացավ, որ դեռ գտնվում է խելագարանոցում: Բայց դռան վրայի փոքրիկ պատուհանը բաց էր, որտեղից երևում էր Կաղլիկ-կատվի գլուխը:

— Բանանիտո՛, Բանանիտո՛, այ թե պինդ ես քնում, հա՛:

— Երազ կլինի, որ ես տեսնում եմ Կաղլիկ-կատվի բեղերը,— ասաց Բանանիտոն:

— Արթնացի՛ր, քեզ ասում եմ: Այդ ե՛ս եմ, Կաղլիկ-կատուն:

Այս անգամ Կաղլիկ-կատուն ամբողջովին կուչ եկավ, որպեսզի անցքից կարողանա ներս մտնել և, երբ այդ նրան հաջողվեց, նա մոտեցավ Բանանիտոյին ու լիզեց նրա ձեռքը:

— Եկել եմ, որ քեզ օգնեմ,— ասաց նա:

— Շնորհակալ եմ, բայց ինչպե՞ս:

— Ես դեռ չգիտեմ, բայց չէ՞ որ կարելի է պահակից բանալիները թռցնել:

— Նա կարող է արթնանալ:

— Այդ դեպքում ես դուռը կկրծեմ և կօգնեմ, որ այստեղից դուրս գաս:

— Այո՛, եթե քո տրամադրության տակ տասը տարի ժամանակ լիներ, գուցե և դու երկաթե դըռան վրա մի փոքրիկ անցք կարողանայիր բացել: Բայց ես գիտեմ, թե ինչ է մեզ հիմա պետք:

— Ի՞նչ:

— Մեզ սղոց է պետք, երկաթի սղոց: Դու մի սղոց ճարիր, իսկ մնացածը ես ինքս կանեմ:

— Որ այդպես է, գնամ սղոց ճարելու:

— Շատ ավելի ճիշտ կլիներ,— ասաց Բանանիտոն,— եթե կարողանայի սղոցը նկարել: Այդ ավազակները ինձ մոտ մի կտոր մատիտ էլ չթողեցին:

— Եթե գործը այդտեղ է հասել,— բացականչեց Կաղլիկ-կատուն,— առա՛ քեզ իմ թաթերը: Մի՛ մոռացիր, որ իմ թաթերից երեքը կավիճով են նկարված, իսկ չորրորդը՝ յուղաներկով:

— Այդ կարելի է, բայց ախր թաթերդ կմաշվեն:

Կաղլիկ-կատուն ոչ մի հակաճառություն չէր ուզում լսել:

— Սպասիր, չէ՞ որ դու միշտ էլ կարող ես ինձ համար նոր թաթ նկարել:

— Իսկ ինչպե՞ս իջնենք պատուհանից:

— Պարաշյուտ կնկարես:

— Իսկ ջրով լի փոսն ինչպե՞ս կանցնենք:

— Նավակ կնկարես:

Երբ Բանանիտոն փախուստի համար անհրաժեշտ ամեն բան նկարեց, Կաղլիկ-կատվի թաթից համարյա թե ոչինչ չմնաց, կարծես թե նրա թաթը կտրել էին:

— Տեսնու՞մ ես,— ծիծաղեց Կաղլիկ-կատուն,—



ինչ լավ է, որ ես իմ անունը չփոխեցի. Կաղլիկ էի, Կաղլիկ էլ կմնամ միշտ:

— Ես քեզ հենց հիմա նոր թաթ կնկարեմ,— առաջարկեց Բանանիտոն:

— Մենք հիմա ժամանակ չունենք: Գնանք, քանի դեռ պահակները չեն արթնացել:

Բանանիտոն սկսեց սղոցել: Բարեբախտաբար նա այնպիսի մի սղոց էր նկարել, որը կարող էր երկաթը կտրել ձմերուկի նման: Մի քանի րոպեից հետո դռան վրա մի մեծ անցք գոյացավ և մեր բարեկամները հեշտությամբ դուրս եկան միջանցք:

Բանանիտոյի փախուստը շուտով հայտնի դարձավ: Խելագարանոցի պատուհանից պահնորդները գոռում էին.

— Օգնեցե՛ք, տագնա՛պ. փախել է մի վտանգավոր խելագար:

Բանանիտոն ու Կաղլիկ-կատուն կուչ էին եկել նավակի մեջ, որպեսզի աննկատելի անցնեն փոսը: Բայց նրանք չէին կարողանա շատ հեռու փախչել, եթե նրանց չսպասեր Տիմիկ չանող Բենվենուտոն, որը հասկացել էր Կաղլիկ-կատվի մտադրությունը և իր սայլակով եկել էր նրան օգնության:

— Շո՛ւտ, թաքնվեք այստեղ,— շշնջաց ծերունին: Եվ անզավորելով նրանց սայլակի մեջ, ծածկեց բարջերով: Մոտեցող պահնորդներին նա ցույց տվեց հակառակ կողմը և ասաց.— Նայեցե՛ք այնտեղ, նրանք փախան այդ կողմը:

— Իսկ դու ո՞վ ես:

— Ես աղքատ ճտտավաճառ եմ, կանգնել եմ հանգստանալու:

Որպեսզի ցույց տա, որ նա իրոք ծերունի է, ճտտավաճառը նստեց սայլակի բռնակին և սկսեց ծխամորճ ծխել: Խեղճ Բենվենուտոն շատ լավ գիտեր, որ եթե նստի, կավելանան իր սպիտակ մազերը և, ո՞վ գիտե, այդ մի քանի րոպեի ընթացքում քանի՞ տարով կծերանա: Բայց դե Բենվենուտոն այդպիսին էր:

«Այն տարիները, որ ես կորցնում եմ,— մտածում էր նա,— մի ուրիշի կյանք կերկարացնեն: Այդպես իմ կյանքը փաստորեն ես տալիս եմ ուրիշներին»:

Եվ նա ծխամորճի ծուխը փչեց ուղիղ պահնորդների երեսին:

Դժբախտաբար հենց այդ ժամանակ Կաղլիկ-կատվի քիթը քոր եկավ: Բանն այն է, որ բարջերը շատ էին փոշոտ: Կաղլիկ-կատուն փորձեց քիթը սեղմել թաթով, որպեսզի չփռշտա, բայց բավական ուշ հիշեց, որ առջևում նա միայն մի թաթ ունի: Նա փռշտաց և այնպես ուժեղ, որ փոշու ամպեր բարձրացան սայլակից:

Կաղլիկ-կատուն գերադասեց սայլակից դուրս թռչել ու փախչել, որպեսզի նկարչին չհայտնաբերեն:

— Այդ ո՞վ էր,— հարցրեցին պահնորդները:

— Ինչ-որ շուն էր,— պատասխանեց Բենվենուտոն,— սկզբում թաքնվեց բարջերի մեջ, իսկ հիմա, տեսեք, փախչում է:

— Եթե փախչում է,— ասացին պահնորդները,— կնշանակի խիղճը մաքուր չէ. եկեք հասնենք դրան:

— Թող ընկնեն իմ հետևից,— ուրախացավ Կաղլիկ-կատուն,— գոնե հանգիստ կթողնեն Բենվենուտոյին ու նկարչին:

Նա պտտում էր քաղաքի փողոցներով, իսկ պահնորդները հևասպառ հետևում էին նրան: Ահա նրանք հասան թագավորական պալատի հրապարակը, ուր երկինք էր խոյանում մի հսկայական սյուն:

— Մի թռիչք էլ և մենք փրկված ենք,— ասաց նա իր թաթերին:

Իսկ թաթերը լավ էին լսում նրան և նույնիսկ ավելորդ եռանդ ցուցաբերեցին. փոխանակ միայն

կախվելու սյունից և բարձրանալու նրա կատարը, Կապիկ-կատուն ուղղակի ծիծաղեց սյանը։ Նա նորից դարձավ մի երեքթաթանի կատու պատկերող նկար։ Այդ վայրկյանին նա նույնիսկ ուրախ էր դրա համար, որովհետև պահնորդները, ինչպես հետո այդ մասին իրենք էին գրել իրենց զեկուցագրերում, մնացին ձեռնունայն։

Ո՞ւր կորավ կատուն,— հարցնում էին նրանք։

— Ես տեսա, թե ինչպես թռավ այս սյան վրա։

— Սյան վրա ոչինչ չի երևում։

— Երևում են միայն ինչ-որ խզբզանքներ։ Նայեցե՛ք, այստեղ ինչ-որ մի երեխա դպրոցից թռցրած կավիճով կատու է նկարել։

— Դե գնանք. նկարի հետ մենք գործ չունենք։

Իսկ Բենվենուտոն այդ ժամանակ սայլակը բշում էր դեպի տուն. մեկ-մեկ էլ կանգ էր առնում, որպեսզի շունչ քաշի։ Նա ստիպված մի երկու անգամ էլ նստեց սայլակի բռնակին, քանի որ հոգնությունից այլևս չէր կարողանում առաջ գնալ։ Մի խոսքով, երբ նա տանից դուրս եկավ, ընդամենը ութսուն տարեկան էր։ Իսկ հիմա, երբ նա նորից տեսավ իր տան շեմքը, կլիներ ամենաքիչը իննսուն տարեկան։ Նրա կզակը համարյա դիպչում էր կրծքին, աչքերը կորել էին խորը կնճիռների մեջ, իսկ ձայնը խլացել էր, կարծես գետնի տակից էր գալիս։

— Բանանի՛տո, վե՛ր կաց, հասանք,— ձայն տվեց նա։

Բայց Բանանիտոն նրան չէր լսում. բարձերի տակ տաքանալով, նա խորը քուն էր մտել։

(Շարունակելի)



# ԴԱՏԱՎՈՐ ՈՋՆԻՆ

ԳՐԻԳՈՐ ԵՂԻԿՅԱՆ

Նկ. ԴԱՆԻԵԼ ՍԱՐԳՍՅԱՆԻ

Որս փնտրելիս գայլը մի օր
Հանկարծ ընկավ խորունկ մի հոր։
— Ամա՜ն,— գոռաց,— հասե՜ք, փրկե՜ք,
Լույս աշխարհից ինձ մի՜ զրկեք,
Կյա՜նքս վկա, ողջ եմ քանի,
Ոչ մի վատ բան էլ չե՜մ անի...—
Այս ողբալի, տխուր կանչը
Ընկավ էշի սուր ականջը,
Խիղճը տանջեց մեծափայլին
Ու որոշեց փրկել գայլին։
Իսկույն ճարեց մի մեծ պարան,
Կախեց հորը, հանեց նրան։
Բայց, ինչ եղավ, թոկի օղը
Մի քիչ ճմլեց գայլի կողը,
Հենց որ ելավ կանգնեց հողին,
Խեթ-խեթ նայեց ազատողին։
Ոտից գլուխ մի լավ չափեց,
Զույգ աչքերից կրակ թափեց։
Ու հենց այն էր,
Էշի վայն էր,
Բայց այդ պահին ոզնի մի քաջ,
Պուպուշ, ելավ նրանց առաջ.
—Հը՛, ի՞նչ վեճ է, ի՞նչ զրույց է,
Դատի պահա՞նջ ունեք գուցե։
Փշոտ ոզնուն հենց որ տեսավ,
Կմկմալով գայլը ասավ.
—Ը՜... հա՛, բա ո՞նց, եղբայր ոզնի,



Սրան պետք է պատիժ հասցնի,
Մինչև այս մութ փոսից հանեց,
Կողս ջարդեց, ինձ սպանեց։
—Ի՞նչ ես ասում, այս անտա՞շը...
Կեփեմ հիմի նրա ճաշը.
Աղոթածի՜ն հլա մտիկ,
Փրկարար է դարձել սուտիկ...
Հապա, եղբայր, փորձի՛ր նորից,
Թող քեզ մե՛կ էլ հանի հորից,
Թող աչքովս տեսնեմ բանը,
Արդար կտրեմ դատաստանը։
Եթե մեկ էլ ցավ պատճառի,
Պատիժն իրեն հենց վճռի՝
Միսը կուտես, իմ անուշիկ,
Պոչն էլ կանես ճանճաքշիկ...

Քաղցից գայլի միտքը շաղված,
Ոզնու խոսքից գայթակղված,
Էլ չդատեց երկար-բարակ,
Փոսը ընկավ քարից արագ։
—Ես այստե՜ղ եմ,— գոռաց վարից,—
Դե, շո՜ւտ արեք, հանե՛ք նորից...
—Նորի՞ց հանենք, ա՜յ ապերախտ,
Էլ դուրս գալու չունես դու բախտ,
Քանի ողջ ես, քանի դեռ կաս,
Այդ պատիժը լինի քեզ դաս...

# ՍՏԵՓԱՆ ԱՂԱՋԱՆՅԱՆ



100



ԻՆՔՆԱՆԿԱՐ

Հայաստանի պետական պատկերասրահ...

Այս օրերին այցելուներն ավելի երկար են մնում հատկապես այն դահլիճում, որի պատերը զարդարված են հայ մեծ նկարիչ Ստեփան Աղաջանյանի կտավներով: Եվ դա հասկանալի է, չէ՞ որ մեր ժողովուրդը նշում է նկարչի ծննդյան 100 տարին: Ահա «Մոր դիմանկարը», որը Աղաջանյանի առաջին կտավներից է: Զարմանալի կենդանի, իրական են պատկերված դեմքը, ձեռքերը: Սիրով լի աչքերը նայում են, նայում, կարծես գուշակում են որդու կյանքի ուղին: Իսկ այդ կյանքը անհարթ ու դժվարին է եղել:

Ստեփան Աղաջանյանը ծնվել է 1863 թվականին Շուշի քաղաքում: Տեղի ուսումնարանն ավարտելուց հետո, ուսման ծարավը նրան տանում է Բաքու: Բայց աշխատանքն ու կյանքի պայմանները չեն բավարարում նրան, և նա մեկնում է Ֆրանսիայի Մարսել քաղաքը: Գեղարվեստական ստուդիայում նախնական կրթություն ստանալուց հետո, Աղաջանյանը ընդունվում է Փարիզի Ժուլյենի ակադեմիան:

Բայց ընտանեկան պայմանները թույլ չեն տալիս ավարտելու ուսումը, և Աղաջանյանը վերադառնում է Շուշի, ապա մեկնում Բաքու: Բայց, ավաղ: այնտեղ, ուր հավաքվել էին արդյունաբերության խոշոր տերերը և քաղաքը համակված էր կապիտալ կուտակելու տենդով, չէին հասկանում արվեստը: Նկարչությունը հարգի չէր:

Դառն էին այդ տարիները: Պարզ էր, որ ցանկանում էր շատ ազատվել այդ միջավայրից և մեկնում է Ռոստով, որը այն ժամանակվա զարգացած քաղաքներից էր: Աղաջանյանը երկար տարիներ ապրում և ստեղծագործում է Ռոստովում, իսկ Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո փոխադրվում է Երևան:

Սկսվում են կյանքի բեղմնավոր տարիները: Մեկը մյուսին հաջորդում են նոր նկարներ, որոնք արտահայտում են նոր կյանքի շունչը:

Աղաջանյանն ունի հայրենի հողն ու բնությունը պատկերող շատ բնանկարներ, բայց նա համարվում է դիմանկարիչ: Նրա լավագույն նկարներից են «Մտորումները», «Պիոներուհին», «Բարոնկինան», «Ինքնանկարը», «Վասիլը»:

Նկարիչը չի զարմացնում դիտողին խաբուսիկ գեղեցկություններով, ճչացող գույներով: Նրա գույները չափազանց դա- րեկան են, մեղմ: Կյանքի մեծ փորձը, մարդու նկատմամբ ունեցած սերը, նկարչի վրձնին տալիս են իմաստություն:

Ստեղծագործելուց բացի, Աղաջանյանը զբաղվում էր նաև մանկավարժությամբ: Երևանի գեղարվեստական ուսումնարանում նա դասավանդում էր նկարչություն՝ երիտասարդ սերնդին հաղորդելով իր արվեստասեր հոգու հարստությունը, գիտելիքները:

Պատանի ընթերցողներ, հաճախակի այցելեք Հայաստանի պետական պատկերասրահը: Այնտեղ դուք հետաքրքիր զրույցներ կլսեք մեր նշանավոր նկարիչների մասին, կծանոթանաք նրանց ստեղծագործություններին և կհարստացնեք ձեր գիտելիքները:

Դ. ՂԱՐԱԴՅՈԶՅԱՆ



Վ. Ա. ԳԱՍՊԱՐՅԱՆԻ ԴԻՄԱՆԿԱՐԸ

# Մուկն ու անգղը

ԴՅԵՐԴԻ ՎԱՅՆԱՐ

(Հունգար գրող)

Հեռո՜ւ, շա՜տ հեռու, կապույտ ծովերից այն կողմ, սև լեռներից այն կողմ, դեղին ամայության մեջտեղում կանգնած էր հսկա մի բուրգ: Այդ բուրգի ստորոտում, քարերի արանքում իր տնակն էր սարքել փոքրիկ, մոխրագույն մուկիկը: Նրա բնակարանը շատ կոկիկ էր: Պարզ է, որ լվացարան էլ ուներ, որովհետև ինքներդ հասկանում եք՝ եթե մուկը չլվացվի, ավելի շուտ, ոչ թե մուկ, այլ մի զզվելի առնետ կլինի: Իսկ մեր մուկիկը շատ մաքրասեր էր:



Ամեն առավոտ, հենց որ ծնգծնգում էր զարթեցուցիչի զանգը, տանտիրուհին աշխուժորեն դուրս էր թռչում իր տաքուկ անկողնուց, կանգնում բաց պատուհանի մոտ և տասը րոպե կատարում էր մկնային մարմնամարզություն: Նա պտտեցնում էր պոչը, որպեսզի այն չկորցնի իր ճկունությունը, թափահարում էր ականջները, որպեսզի դրանք ավելի զգայուն լինեն, առջևի թաթերով փորփրում էր գետինը, որ ճանկերը մարզվեն: Որից հետո մուկը լվացվում էր: Իսկ լվացվելիս վերցնում էր ատամի խոզանակը և շատ եռանդով մաքրում էր իր մանր, սպիտակ, սուր ատամները:

Պարզ է, որ լվացվելուց հետո նա հավաքում էր անկողինը և կարգի բերում բնակարանը: Հետո նախաճաշում և զբաղվում էր իր սովորական մկնային գործով՝ սկսում էր կրծել մի որևէ կոշտ բան, ավելի սրելով իր առանց այն էլ փոքրիկ, սուր ատամները:

Նա շատ կարգապահ և մաքուր մուկիկ էր: Դրա համար էլ բոլոր մուկ-մայրիկները իրենց մուկիկ-բալիկների մոտ միշտ՝ նրան էին օրինակ բերում:

Ահա այսպես ապրում էր մեր մոխրագույն մուկիկը, և նրա մտքովն էլ չէր անցնում, թե ինչ անախորժ դեպք է կատարվելու իր հետ:

Մի առավոտ նա որոշեց զբոսնել անապատում: Գլխին դրեց գլխարկը, չէ՞ որ տաք երկրներում առանց գլխարկի չի կարելի փողոց դուրս գալ, կարող է արևը խփել: Նա արդեն շատ էր հեռացել իր բուրգից, երբ զգաց, որ երկար քայլելուց իր ոտիկները կարգին հոգնել են: Բացի այդ, արևը սաստիկ այրում էր, և մեր մուկիկը շուտ-շուտ սրբում էր առվի պես հոսող քրտինքը: «Երանի մի ստվեր լիներ, մի քիչ հանգստանայի»— մտածեց նա:

Եվ հանկարծ անապատի շիկացած ավազի վրա նա նկատեց մի մուգ ստվեր:

— Ի՜նչ երջանկություն,— բացականչեց մուկիկը և տեղն ու տեղը մեկնվեց ստվերում:

Նրա մտքովն էլ անգամ չանցավ, որ իր գլխավերևում, թևերը անշարժ բացած, իրեն է նայում չար ուրուրը, և ավազի վրայի ստվերը հենց այդ ուրուրի թևերի ստվերն է: Սրատես աչքերով գիշատիչը արդեն վաղուց էր նկատել մուկիկին և այժմ կայծակնային արագությամբ սլացավ նրա վրա:

Խեղճ մուկիկ, հազիվ-հազ կարողացավ դուրս պրծնել սարսափելի կեռ կտուցից և սկսեց փախչել այնպիսի արագությամբ, որ նույնիսկ կորցրեց իր նոր գլխարկը:

Փոքրիկ մուկը գերազանց մարզված սպորտ-





սմեն էր։ Իզուր չէին ամենօրյա մարմնամարզական վարժությունները, և նա իր շնորհքը ցույց տվեց վազքի մեջ։

Բայց, իհարկե, նրանից ետ չէր մնում նաև ծեր ավազակը՝ ուրուրը։ Նա համառն էր։ «Ինչ էլ որ լինի, պետք է բռնեմ և նախաճաշեմ»— որոշեց նա։

Իսկ մոխրագույն մուկիկը վազում էր ու վազում։ Հենց որ գլուխը շրջում ու ետ էր նայում, սարսափում էր. ուրուրը, ուր որ է, կհասներ։ Խեղճի՝ շունչը արդեն բոլորովին կտրվում էր, երբ հանկարծ ավազի վրա տեսավ բամբուկի մի կտոր։ Լարելով վերջին ուժերը, մուկիկը խցկվեց բամբուկի մեջ։

— Էհ, որ այդպես է, ես քեզ կտանեմ բամբուկի հետ միասին,— կռկռաց ուրուրը և բամբուկի՝ կտորը օդ բարձրացրեց։

Իսկ մուկը նստած էր մեջը։ Մի քիչ հանգստանալուց հետո, նա զգուշությամբ մոտեցավ եզրին ու դուրս նայեց։ «Վա՜յ, բա ես ինչպե՞ս ներքև կիջնեմ»—տեսնելով այդ ահավոր բարձրությունը, սարսափեց նա։ Բայց դե իսկական մուկը այդպես շուտ չի կորցնի իրեն։ Մի քիչ մտածելուց հետո, նա ճտտացրեց ճակատին՝ գտա՜։

Հանեց թաշկինակը, տեղնուտեղը մի պարաշյուտ պատրաստեց և դուրս թռավ օդանավից... այսինքն՝ բամբուկի միջից։

Գետնին հասնելով, նա որոշեց մի քիչ շունչ քաշել, հանգստանալ իր գլխին եկած փորձանքից։ Արևից պաշտպանվելու համար նա թաշկինակի ծայրերը կապեց խոտերին ու փառավոր կերպով մեկնվեց ստվերում։ Բայց այստեղ էլ նա նկատեց, որ մեկը սուր հայացքով իրեն է նայում։ Թշնամին նորից գտել էր իր հետքը։

— Ստո՛ր մուկ,—կատաղած ֆշշացրեց ուրուրը,— ես քեզ ցույց կտամ, թե ինչ է նշանակում նախաճաշից առաջ փախչել ինձանից։ Սպասի՛ր, ո՞ւմ եմ ես ասում։

Նա, իհարկե, կարող էր ասել «սպասիր», բայց մեր մոխրագույն մուկիկը ոչ մի վայրկյան էլ չսպասեց։ «Հիմա այնքան վազեմ շրջանաձև, որ գլուխը պտտվի»— որոշեց մուկիկը։

Ափսոս, դա էլ չօգնեց։ Ուրուրը, որի ախորժակը չարությունից ավելի էր բորբոքվել, կրնկակոխ հետևում էր նրան։ Դժբախտ զոհը կորցրել էր փրկության հույսը, երբ հանկարծ նորից փրկվելու մի հնարավորություն ստեղծվեց։

Իրենցից ոչ հեռու, բարձր խոտերի միջից երևում էր մի դեղնա-դարչնագույն բլուր։ Մուկն իրեն գցեց դեպի բլուրը։ Ուրուրը՝ նրա հետևից։ Հենց որ գազանը հարձակվում էր, մուկիկը թըռչում էր մի կողմ։ Հարվա՜ծ... ապարդյո՜ւն։ Եվ այստեղ գազանը իր կեռ կտուցի հետ միասին ամբողջ թափով խըրվեց դեղին բլուրի մեջ...

Սարսափելի մի ռռնոց ցնցեց երկինքն ու գետինը։ Բլուրը կենդանացավ, թափահարեց պոչը և ուրուրին այնպիսի մի կործանիչ հարված հասցրեց, որ սա նախաճաշը մոռացած՝ րոպեապես անհայտացավ երկնքում։ Իսկ մուկիկը հայտնվեց գազանների արքայի առջև, այո՛, հենց առյուծի առջև։

Առյուծը, որին նրանք ընդունել էին դեղնադարչնագույն բլուրի տեղ, քնած էր և այժմ սաստիկ բարկացել էր։ Ո՞վ է համարձակվել խանգարել նրա արքայական քունը։ Եվ նա սպառնագին բարձրացրեց իր ահավոր թաթը։

Մեր մուկիկն իր չորս ոտիկներով ծնկի եկավ։

— Իմ արքա ու տիրակալ, խնայե՛ք ինձ,— աղերսեց նա։—Կտեսնեք, որ ես ձեր լավության տակ չեմ մնա։ Ո՞վ գիտե, գուցե մի օր ես ձեզ պետք կգամ։





Առյուծը չէր ուզում հավատալ իր լսածին։

— Այդ ի՞նչ ես ասում, ճստիկ։

Մուկիկը նկատեց, որ առյուծը թաթը ետ քաշեց, և դա սրտապնդեց նրան։

— Ձերդ արքայական մեծություն,— մի քիչ բարձր ծվծվաց նա,— եթե դուք ինձ խնայեք, ես ձեզ վարձահատույց կլինեմ։ Գուցե իմ օգնությունն էլ մի օր ձեզ պետք լինի։

— Հա-հա՜-հա՜-հա՜,— թնդաց պատասխանը։ — Դո՞ւ, ցատկոտող ոչնչություն, պատրաստվում ես օգնել ինձ, գազանների արքայիս, հա՜-հա՜-հա՜-հա՜-հա՜...

— Այո՛,— պատասխանեց մուկը բարակ, բայց շատ վճռական ձայնով։

Վերջապես, երբ առյուծը խոսել կարողացավ, ասաց.

— Մի՛ վախենա, ես ձեռք չեմ տա քեզ, որովհետև դու ծիծաղեցրիր ինձ։ Գնա՛ հանգիստ։

Երջանիկ մուկը շտապեց դեպի տուն։ Առյուծը արդեն չէր երևում, մինչդեռ երկար ժամանակ լսվում էր նրա զորեղ ծիծաղի դղրդոցը։

Աստիճանաբար իջավ երեկոն, լիալուսինը լուսավորեց անապատը, և առյուծը դուրս եկավ գիշերային շրջագայության։ Նա այնքան էր տարվել իր մտքերով, որ բոլորովին չնկատեց որսորդի թակարդը։ Եվ հանկարծ... ուժեղ ցնցում։ Առյուծը չհասցրեց աչքը թարթել, երբ իրեն տեսավ ցանցի մեջ։ Նորին մեծություն առյուծը, անհաղթ տիրակալը, գազանների արքան, անապատի միապետը և այլն, և այլն, և այլն, թփրտում էր արմավենուց կախված հաստ ցանցի մեջ։

Իսկ մոխրագույն մուկիկն այդ ժամանակ քնած էր իր տաքուկ անկողնում։ Երազի մեջ ինքը մեծացել դարձել էր առյուծի չափ և իրեն ընտրել էին գազանների արքա։ Հպատակ գազանները անվերջանալի շարանով անցնում էին իր առաջից և, որպես նվեր, մատուցում էին պանրի մեծ-մեծ կտորներ...

Եվ հանկարծ՝ առյուծի խլացնող մռնչյուն։ Մուկը ցատկեց անկողնուց և նետվեց դեպի պատուհանը։

— Երևում է, առյուծի հետ մի փորձանք է պատահել։ Նա ինձ օգնության է կանչում,— մտածեց մուկիկը և, առանց մի վայրկյան կորցնելու, ճանապարհ ընկավ։



Վերջ ի վերջո, մուկն էլ ունի խիղճ, փոքր, բայց իր հասակին լրիվ համապատասխան։

Առյուծի սարսափելի ոռնոցից նույնիսկ լուսինն էր դողում երկնքում...

Երկու րոպեից հետո մուկն արդեն գտնվում էր այն օազիսի մոտ, որտեղ առյուծը թակարդ էր ընկել։

Այո՛, տխուր տեսարան էր։ Մուկը սրտանց հարգում էր գազանների արքային և ուղղակի ցավում էր, տեսնելով, թե ինչպես նա անօգնական կախվել էր ծառից, կարծես հասած պտուղ լիներ։ Տարբերությունը միայն նրանումն էր, որ պտուղները, որպես կանոն, հանգիստ իրենց համար կախված են ճյուղից, իսկ առյուծը թփրտում էր և այնպես ոռնում, քիչ էր մնում խեղճ մուկիկի ականջների թաղանթը պատռվեր։

Մոտենալով արմավենուն, նա հարգանքով՝ խոնարհվեց։ Առյուծը չպատասխանեց։ Մուկն, իհարկե, չնեղացավ, այլ մտածեց, թե ինչից սկսի փրկելու աշխատանքը։

«Ծառը շրջել՝ իմ ուժերից վեր է,— արդարացի կերպով մտածեց նա։— Եվ դրա համար էլ հարկավոր է կրծել ցանցը»։ Ամենից առաջ նա ինչ-որ տեղից քարշ տվեց մի բարձ և խնամքով դրեց կախված առյուծի տակ»։ Չէ՞ որ գազանների արքան է,— մտածեց մուկը,— վայել չէ նրան ուղղակի գետնին շմփալ»։

Իսկ այդ ժամանակ առյուծը դադարեցրեց իր արքայական ոռնոցը և մեծ հետաքրքրությամբ սկսեց հետևել, թե ինչ է անում մուկը։

— Քառորդ րոպե ընդամենը, ձերդ մեծություն,— ասաց մուկը, գլուխ տալով։— Համարյա





ցավ չեք զգա։

Նա մոտեցավ արմավենու բնին և մի ակնթարթում բարձրացավ նրա կատարը։ Ապա, բոլոր պարաններն նայելուց հետո, գտավ գլխավոր ճոպանը։

«Ա՛յ, հիմա ցույց կտանք մեր շնորհքը, սևերես չենք լինի, մկնային պատիվը խայտառակ չենք անի»— մտքում ասաց մուկը և մի քիչ առաջ մաքրած իր ատամները խրեց պարանի մեջ։ Ձյան պես սպիտակ և ածելու պես սուր ատամները փայլփլեցին լուսնի լույսի տակ։ Գիշերային լռության մեջ թեթև կրթկրթոց էր միայն լսվում։ Եվ ահա ուժեղ թրխկոց... առյուծը թրմփաց բարձի վրա։ Ցանցը բացվեց։ Գազանների արքան դժվարությամբ դուրս պրծավ նրա միջից։

— Շնորհակալություն,— հուզված ձայնով ասաց առյուծը, երբ մուկը հոգնած, բայց հպարտ կանգնեց նրա առաջ։—Շնորհակալություն, դու փրկեցիր իմ կյանքը։

Նա ուղղեց թագը գլխի վրա ու շարունակեց.

— Քո կատարած հերոսության համար ես պարգևատրում եմ քեզ իմ գլխավոր թիկնապահի պաշտոնը։—Եվ իր պարանոցից հանելով ոսկե մեծ մեդալը՝ կախեց մկան վզից։

Պարգևատրվածը չէր կարողանում տեղից շարժվել, ոչ միայն իրեն վիճակված բախտի համար, այլև մեդալի ծանրությունից, որը նրան լրիվ գետնին էր կռացրել։

Այնուհետև առյուծը սիրալիր դարձավ դեպի փոքրիկ հերոսուհին.

— Իսկ այժմ, իմ բարեկամ, պատմիր ինձ, թե որտեղից են քո այդ հրաշալի ատամները։ Ինչպե՞ս կարողացան դրանք այդպես սրագ և վարպետորեն հաշիվ տեսնել հաստ ճոպանի հետ։

Մուկը ծգվեց, որքան թույլ էր տալիս իր վզից կախված մեդալը, և ասաց.

— Գնանք ինձ հետ, մեծ արքա, և ես ծեզ բաց կանեմ իմ գաղտնիքը։

Նա բռնեց առյուծի թաթից, և միասին ճանապարհ ընկան դեպի բուրգը։ Հպարտությունից քիչ էր մնում պատռվեր փոքրիկ հերոսուհու կուրծքը. նա քայլում էր գազանների ամենակարող արքայի կողքից։ Սակայն առյուծի հետ քայլելը մկան համար շատ էր դժվար։ Որքան էլ արքան աշխատում էր քայլերը փոքր անել, մուկը հազիվ էր հասնում։ Արևն արդեն վաղուց էր փայլում երկնքում, երբ նրանք հասան բուրգին։

Փոքրիկ մուկը քաղաքավարությամբ առաջ անցավ, բաց արեց դռները և խոնարհաբար ներս հրավիրեց մեծ հյուրին։

— Կնայեմ լուսամուտից,—պատասխանեց առյուծը։—Այս արևոտ օրին չարժե տանը նստել, էլ չեմ ասում, որ քո բնի մեջ չի մտնի նույնիսկ իմ մի թաթը։



Զգալով արքայական որոշման անսասանությունը, մուկը ծլկեց իր տնակը։ Նա, այդ փոքրիկ ու թույլ արարածը հիմա պետք է սովորեցնի գազանների ահեղ արքային՝ առյուծին։

Հաստատուն, արագ շարժումներով նա պատրաստեց ատամները մաքրելու համար բոլոր անհրաժեշտ պարագաները և, հուզմունքից կակազելով, սկսեց պատմել։

Սկզբում նա առյուծին ցույց տվեց ատամի խոզանակը, ատամնաքսուքը, բաժակը, չմոռանալով նաև բերանը ողողելու ջրի մասին։ Վերջապես, նա մեծ հանդիսավորությամբ խոզանակի վրա սեղմեց սպիտակ քսուքը և սկսեց մաքրել ատամները։

Առյուծը անկեղծ հարգանքով հետևում էր նրան և հավանությամբ ճոճում գլուխը։

«Հը՜մ, մտքովս էլ երբեք չի անցել։ Պարզ է, թե ինչու են ատամներս արդեն փչացած։ Իզուր ես կերա այն երեք ատամնաբույժներին, որոնք դեռ մանկությանս ժամանակ գալիս էին ինձ մոտ,—տխրությամբ մտածեց նա, բայց հիշելով իր փոքրիկներին, նրա տրամադրությունը նորից բարձրացավ։— Ոչինչ, դրա փոխարեն ես կսովորեցնեմ իմ բալիկներին, որ միշտ մաքրեն իրենց ատամները»։





Վեր կենալով, նա դիմեց մուկիկին.

— Ամեն ինչ պարզ է. իմ կորյունների ատամները մաքրելու գործում ես քեզ նշանակում եմ գլխավոր տեսուչ:

Մուկն այնպես վախեցավ, որ քիչ մնաց կուլ տար ատամի խոզանակը: Սակայն, գիտակցելով, թե ինչ մեծ պատիվ է իրեն տրված, շիկնեց: Խորը գլուխ տալով, նա շնորհակալություն հայտնեց իր հյուրին՝ արքայական գթության համար: Իսկ առյուծը թափ տվեց թաթը, զգացված ասելով.

— Դու դրան արժանի ես, իմ խիզախ, անվեհեր բարեկամ: Իմ արքայական խոսքով հաստատում եմ՝ արժանի ես: Միայն խնդրում եմ մի բան. խիստ եղիր նրանց հետ: Չէ՞ որ նրանք մի քիչ վայրենի են: Անցած անգամ ամենափոքրս, շատ սիրելուց, այնպես շոյեց ընձուղտին, որ եթե ես չհասնեի, այդ երկարավզից միայն սմբակները կմնային: Կասկած չկա, որ քեզ էլ նրանք կսիրեն, դու մի՛ նեղացիր:

Արևն արդեն մայր էր մտնում, երբ նրանք միասին ճանապարհվեցին դեպի առյուծի անձավը:

Այդ օրվանից մուկը բարեխղճորեն դաս էր տալիս կորյուններին. ամեն առավոտ նրանք շարքով նստում էին անձավի առաջ և մուկիկի հրամանով մաքրում ատամները:

Փոքրիկներին նայելով՝ առյուծը ուրախանում էր և գործին խառնվում էր միայն այն ժամանակ, երբ նրանցից որևէ մեկը շատ սիրելուց ցանկանում էր կուլ տալ մուկիկին: Բայց նրան բռնելը այնքան էլ հեշտ չէր, և ոչ մի դժբախտություն, իհարկե, չպատահեց: Մուկը և առյուծի ընտանիքը շատ երկար ժամանակ ապրում էին հաշտ և բարեկամաբար: Եվ գուցե մինչև այսօր էլ այդպես է: Այժմ դուք հասկացա՞ք, թե որքան անհրաժեշտ է ամեն օր մարմնամարզություն կատարելը և ատամներ մաքրելը:

Այս պատմությունը մեզ սովորեցնում է նաև այն, որ ամեն ոք, նույնիսկ ամենաուժեղը, կարող է ընկնել փորձանքի մեջ, և ամեն ոք, նույնիսկ ամենաթույլը, կարող է և պետք է օգնի նրան:

Ռուս. թարգմ. ԱՍՅԱ ՍԱՀԱԿՅԱՆ





# ԾՈՒՅԼ ՔՈՒՅՐԵՐԸ

ՀՈՎՀԱՆՆԵՍ ԱՆԴՐԵԱՍՅԱՆ

Դատարկ դույլը, բերանը բաց,
Մութ անկյունից մի օր ասաց.
— Ի՞նչ ձայներ են պահարանում,
Ո՞վ է այնտեղ աղմուկ հանում:
— Խեղդըվեցի՜նք, փրկեցե՜ք մեզ,
Աղմկում են իրերն այսպես:
— Էլ չենք ուզում այստեղ մնալ...
Խիստ բարկացան ափսե, գդալ.
Սա ի՞նչ տեղ է, կեղտ ու փոշի,
Մնացորդներ՝ մրգի, հացի...
Մեջ ընկնելով մի հին դանակ՝
Ասաց. — Հերիք վիճեք տաք-տաք,
Ասեք տեսնենք, ո՞վ կա տանը,
Որ այսպես է պահարանը...
Մրոտ թավան գլուխն հանեց
Ու դանակին պատասխանեց.
— Նայի՛ր, ահա Խմման, Ջեմման...
— Ի՞նչ է, նրանք ամա՞ն լվան...
— Բա ո՞վ լվա, — դույլը ասաց.
Ինքն էլ թեքվեց ու վնգվնգաց:
Դանակն ասաց. — Թող մայրը գա,
Կեղտ ու փոշու ցավը հոգա:
— Ի՞նչ ես խոսում, ա՛յ բութ դանակ,
Արդյոք ունի՞ նա ժամանակ...
Գործարանից տուն է գալիս
Մոտիկ խանութն է վազ տալիս.
Հաց է եփում, ջուր է բերում,
Տան կտուրի ձյունն է քերում:
Իսկ աղջիկներն՝ Խմման, Ջեմման,
Դեռ քնած են անհոգ, անբան:
Մահճակալը հենց որ լսեց,
Վրդովմունքից ուժգին ցնցվեց.
— Շո՛ւտ վեր կացեք, հագնվեցե՛ք,
Տուն ու տեղը կարգի բերեք.
Ո՛չ վառել եք վառարանը,
Ո՛չ մաքրել եք պահարանը,
Ո՛չ հավերին կուտ եք տվել,
Ո՛չ դասներդ եք դուք սովորել...
— Մահճակալ ջան, ների՛ր դու մեզ,
Էլ չենք անի երբեք այսպես...
Ասին քույրերն ու ժրաջան
Իսկույն ևեթ գործի անցան:

# ԲԱՐԵԿԱՄՆԵՐԸ



Մեծ-մեծ փաթիլներով ձյուն է գալիս, ծածկում լեռներն ու դաշտերը: Իսկ սպիտակ, փոքրիկ Նապաստակը շատ է քաղցած: Ի՞նչ անի, նա չի՞ կարող այդպես նստել տանը: Հանկարծ ու ձյունը երկար գա: Նա ստիպված դուրս է գալիս տանից՝ ուտելիք ճարելու:

Ա՜յ քեզ հրա՜շք, ճանապարհի եզրին, ձյան մեջ երկու շաղգամ է ընկած: Փոքրիկ Նապաստակն իսկույն մեկը ուտում է, իսկ մյուսը չի ուզում ուտել: Նա մտածում է, որ ցուրտ է հիմա ու ձյունը շատ, Իշուկը դժվար թե ուտելու բան ունենա: Ավելի լավ է,



այս մի շաղգամն էլ նրան տա: Ա՜յ, թե կուրախանա խեղճ, քաղցած Իշուկը:

Սպիտակ, փոքրիկ Նապաստակը գնում է Իշուկի մոտ, իսկ սա տանը չէ: Նապաստակը շաղգամը թողնում է Իշուկի տանն ու հեռանում:

Իսկ Իշուկը նույնպես դուրս էր եկել ուտելիք ճարելու: Նա մի գետնախնձոր էր գտել և ուրախ-ուրախ տանում էր տուն:

Տուն մտավ և ի՞նչ է տեսնում... Մի մեծ շաղգամ է դրված սեղանին: «Այս որտեղի՞ց է հայտնվել»— մտածում է նա:

Հետո նա ուտում է գետնախնձորն ու սկսում մտածել. «Ձյունը շատ է, ու խիստ ցուրտ է դրսում: Երևի Գառնուկը ուտելու բան չունի, ավելի լավ է, այս շաղգամը նրան տամ»:

Եվ Իշուկը գնում է Գառնուկի մոտ: Բայց արի ու տես, որ Գառնուկն էլ տանը չէ: Իշուկը շաղգամը թողնում է սենյակում ու գնում իր բանին:

Իսկ Գառնուկը, բանից պարզվում է, որ նույնպես քաղցած էր ու դուրս էր եկել ուտելիք ճարելու: Նա մի կաղամբ էր գտել և





շաղգամը դրեց Եղնիկի սեղանին ու ետ դարձավ:

Իսկ փոքրիկ Եղնիկը սոված նստել էր տանը, նստել ու հետո որոշել էր գնալ ուտելիք ճարելու: Բարեբախտաբար մի սալաթ էր գտել ու ահա վերադառնում էր տուն: Տանը նա սեղանի վրա տեսավ շաղգամը ու շատ զարմացավ: «Տեսնես այս ո՞վ է բերել» — մտածեց նա: Հետո, երբ նա կերավ իր սալաթն ու կշտացավ, մտածեց. «Դրսում ձյուն շատ է եկել ու խիստ ցուրտ է: Փոքրիկ, սպիտակ Նապաստակը երևի քաղցած է. արի այս շաղգամը նրան տամ»: Ասաց ու, տեղից վեր կենալով, գնաց Նապաստակի տուն:

ուրախ-ուրախ տանում էր տուն:

Գառնուկը մտավ սենյակ և ի՞նչ տեսավ՝ սեղանի վրա մի մեծ շաղգամ է դրված: «Որտեղի՞ց այս շաղգամը» — մտածեց նա ու սկսեց ուտել իր կաղամբը: Կերավ, պրծավ ու ասաց. «Դրսում շատ ձյուն է եկել ու խիստ ցուրտ է: Փոքրիկ եղնիկը երևի ուտելու բան չունի, արի այս շաղգամով հյուրասիրեմ նրան»: Մտածելն ու տեղից վեր կենալը մեկ եղավ:

Գառնուկը գնա՜ց, գնա՜ց, հասավ Եղնիկի տանը, բայց Եղնիկը տանը չէր: Գառնուկը





Կուշտ ուտելուց հետո, փոքրիկ սպիտակ Նապաստակը պառկել էր մահճակալին ու խորը քուն մտել: Փոքրիկ Եղնիկը չուզեց արթնացնել Նապաստակին, նա շաղգամը դրեց աթոռի վրա ու դուրս եկավ:

Սպիտակ Նապաստակը երբ քնից արթնացավ, տեսավ, որ շաղգամը դրված է իր կողքին, աթոռի վրա: Նա սկզբում զարմացավ, բայց հետո գլխի ընկավ, որ այդ շաղգամը իր բարեկամներից մեկն ու մեկը բերած կլինի, շատ ուրախացավ դրա համար:

Ֆրանսերենից թարգմ.
ՀՈՎՀԱՆՆԵՍ ԹՅՈՒՓԵԼՅԱՆ

# ԲԱՐԻ ԽՈՐՀՈՒՐԴ

Մ. ՄԻՐԶԱԲԵԿՈՎԱ

Ի՞նչ անում էին,
Ոչինչ չէր օգնում,
Լալիս էր տղան,
Երբեք չէր հոգնում:
Մի անգամ հանկարծ
Ծեծեցին դուռը.
Հոր հին օրերի
Ընկերն էր հյուրը:
Ճաշի ժամանակ,
Երբ հյուրը տեսավ
Լալկան տղայի
Արցունքները հորդ,
Զարմացավ, մթնեց
Եվ հետո տվեց
Այսպիսի խորհուրդ.
— Արտասուքները
Կաթիլ առ կաթիլ
Հավաքել, լցնել
Փոքրիկ սրվակը
Եվ իսկույն տանել
Մոտիկ կրպակը,
Ամեն մի կաթիլ
Արցունքի համար
Մի զամբյուղ կոնֆետ
Կտան անպատճառ:—
Լալկանն սկսեց
Իր լացն ընդհատված
Եվ արցունքները
Հավաքել ջանաց:
Բայց հենց որ փոքրիկ
Սրվակն էր առնում,
Լացն աչքերի մեջ
Ծիծաղ էր դառնում...
Էլ ոչ մի կաթիլ
Արտասուք չկար,
Պարզ է, էլ նրան
Ո՞վ կոնֆետ կտար:
Այնքան չարչարվեց,
Այնքան դառնացավ,
Որ լաց ու արցունք
Իսպառ մոռացավ:
Հիմա բոլորը
Գոհ են նրանից,
Տղայի լացը
Չեն հիշում անգամ,
Բայց նրան էլի
Կոչում են Լալկան:

Ռուս. թարգմ.
ՄԱՐԻԱ ՀԱԿՈԲՅԱՆ





## ԳԱԶԱՆՆԵՐԻ ԴՊՐՈՑՈՒՄ

Խղճում է իբրև թե
Ընձուղտը թութակին,
Բայց մի՞թե օգնում է
Նա այդ խեղճ թռչնակին:

* * *

Ինչու՞ են զուր դպրոց գնում
Կաչաղակներն այդ շաղակրատ,
Որ դասից բան չեն հասկանում
Եվ չեն լսում խոսք ու խրատ:

* * *

Հասկացե՛ք դուք, գազանիկնե՛ր
Տանձ, խնձոր չէ գրիչը ձեր,
Ո՛չ բույր ունի ու ո՛չ էլ համ,
Չկրծոտեք մյուս անգամ:



# ԱՐՋՈՒԿ ՄԵԾԱԿԱՆՋ



Արջուկն ու Բիմբումբոմը աթոռի տակ գարաժ են սարքել և առավոտից լարում են ավտոմեքենան։

—Արդեն պատրաստ է,— ասաց ծաղրածուն։

Արջուկը նստեց ղեկի մոտ, իսկ հետևում տեղավորվեցին Ռոզան ու Լալան։ Ավտոն իսկույն շարժվեց տեղից և բաց դռնից դուրս եկավ բակ ու սլացավ փողոցներով։

—Կանգնեցրո՛ւ, կանգնեցրո՛ւ, Մեծակա՛նջ արջուկ,—բղավում էին վախեցած տիկնիկները։

Բայց Արջուկը չգիտեր, թե ինչպես պետք է կանգնեցնի մեքենան։

Բիմբումբոմն ու թավշամազ նապաստակը վազում էին մեքենայի հետևից, իսկ մեքենան արդեն շատ էր հեռացել...

Ցեխը թռչում էր անիվների տակից։ Վախեցած կռկռացնելով դես ու դեն էին փախչում սարսափահար սագերն ու հավերը։

Ավտոմեքենան արագ թափով մոտենում էր անձրևալճակին։ Տիկնիկները բղավեցին.

—Աղե՜տ։

Երկու քայլ էր մնում, որ մեքենան հասնի անձրևալճակին, մեկ քայլ... Արջուկը փակեց աչքերը։ Վերջապես մեքենան կանգ առավ, դռռաց երկու անգամ և լռեց։

Արջուկը դանդաղորեն բացեց աչքերը, սրբեց քթի սառը քրտնքի կաթիլները։

Ավտոմեքենայի առջևի անիվները սուզվել էին ջրի մեջ։ Քիչ մնաց երեքն էլ ընկնեին ջուրը։

Արջուկը գլխիկոր, տխուր վերադարձավ տուն՝ թելով քարշ տալով մեքենան։



# ԳՈՒՆԱՎՈՐ ԱՆՁՐԵՎՆԵՐ



Պուրակում վարդագույն մի շենք կա, որի ճակատին գրված է. «Երևանի ալյումինի գործարան»: Ե՛կ, պատանի բարեկամ, դարպասից մտնենք ներս: Ահա հսկայական վաննաների մոտ կանգնած մարդիկ կրակի հետ են կռվում: Դանդաղ հալվում է ալյումինափոշին: Ջերմաչափը ցույց է տալիս 850—1000 աստիճան: Ալյումինափոշուց ծընված ձուլվածքը էլեկտրաձուլարանից բռնում է փոլգացլանման բաժանմունք տանող ճանապարհը:

— Բարով եկա՛ք, սիրելիներս,— զվարթ աղմկում են հաստոնները:— Ինչքան հա՛ստ եք, նույնիսկ ոտքի վրա կարգին չեք կարողանում կանգնել:

Ձուլվածքը մտնում է հաստոնների տակ, նիհարում, նիհարում ու է ալյումինե թիթեղներ դառնում և գնում կտրման տեղամաս: Իսկ ավելորդ մասե՞րը: Առաջ գործարանում դրանց մասին արհամարհանքով ասում էին՝ հումքի մնացորդ:

Դա երկու տարի առաջ էր: Այն ժամանակ վարպետ Նիկոլայը դեռ չէր մտածել, որ ալյումինե այդ ժապավենաձև մընացորդներից կարելի է պատրաստել գույնզգույն զարդարանքներ: «Թող երեխաները տոնական տեսք տան իրենց պիոներական սենյակներին ու դահլիճներին»:

Վարպետ Նիկոլայի ձեռքերով ծնվեց այդպիսի զարդարանք արտադրող առաջին հաստոցը: Թմբուկներից մեկի վրա հաստոցը հավաքում է ալյումինե ժապավենները, հետո զգուշությամբ առնելով ատամի տակ, աջ ու ձախ կտրատում: Ծաղկաշղթան պատրաստ է: Բայց գործը կիսատ չի թողնում: Հենց ինքն էլ դրանք փաթաթում է բազմերանգ թղթե ժապավեններով: Մի ուրիշ հաստոց էլ ալյումինից թելեր է գործում «անձրևների» համար: Եվ ծաղկաշղթաներն ու «անձրևները» ճանապարհ են ընկնում:

— Ինձ ծաղկաշղթաներ ու «անձրև» տվեք,—խանութներում վաճառող մորաքույրներին են դիմում բազմաթիվ երեխաներ:

Իսկ գիտե՞ք, թե այդ ովքեր են, որ մտածում են ձեր մասին: Ծանոթացեք, Նիկոլայ Շահբազյանն է: Գործարանում նրան ասում են վարպետ Նիկոլայ: Ամեն օր վաղ առավոտյան նա շտապում է գործարան:

—Բարի լո՛ւյս,—ասում է վարպետը:

Հաստոցի առջև նստած մտազբաղ երիտասարդը բարձրացնում է գլուխը: Փականագործ Վասյան է, բաժանմունքի մեքենաների «բժիշկը»:

— Նիկոլայ, մի ա՛յս կողմը արի.—դիմում է Վասյան,—իսկ ինչո՞ւ միայն ծաղկաշղթաներ ու «անձրևներ», պետք է դահլիճները հարստացնել նաև ձկներով, աստղիկներով:

Իհարկե, դա դեռ երազանք է: Ու նրանք աշխատում են նոր հաստոցի վրա,՝ որպեսզի երազանք չմնա, որպեսզի նոր հաստոցը հլու-հնազանդ լսի մարդկանց՝ Քրիստինային, Ալինային, Ասյային և մյուսներին: Սրանք գործարանի երիտասարդ բանվորուհիներից են, օրական 5000 ծաղկաշղթա են արտադրում:

Ահա և Սուսաննան, Սվետան: Հաստոցի առջև են կանգնել, բայց սրտներում երազանք ունեն, մեծ երազանք: Սովորում են բաներիտ դպրոցում և աշխատում: Այդպես ավելի լավ է: Երբ հասունության վկայական ստանան, այն ժամանակ բարձրաձայն բոլորին կհայտնեն իրենց երազանքի մասին:

— Հենրիկն ու Լաուրան էլ մտադիր են շարունակել ուսումը,—ասում է Նազիկ Դալլաքյանը:

Ինքը փաթեթավորող է, մազերին մի քիչ արծաթ կա: Փաթեթավորող է և Ռիման: Երկուսն էլ առանց համաձայնության գալու մրցում են: Այնքա՜ն գործ ունեն: Օրական մինչև 50 արկղ փաթաթել, ամեն արկղի մեջ՝ 150—170 ծաղկաշղթա և «անձրև»: Նրանց գործը շատ կդըժվարանար, եթե օգնության չգային Նորան, Կարինեն և կոմերիտական կրծքանշանով նրանց ընկերները. № 77 դըպրոցի 9-րդ դասարանից են նրանք և մեկ ամիս է, ինչ աշխատում են գործարանում: Նրանք էլ իրենց երազանքն ունեն: Բրիգադիր Սիլվան ասում է.

— Թեև Մելանյան, Ամալյան, Լարիսան արդեն տասներորդում են, բայց միշտ հյուր են գալիս մեզ: Իրենց հաստոցը չեն մոռանում,—և դիմելով նրանց ավելացնում է.—Մի՛ շտապեք, դուք էլ կվարպետանաք: Այն ժամանակ... Այո՛, ձեզ էլ մեքենա կվստահենք:

ԷԴՄՈՆԴ ԳԵՎՈՐԳՅԱՆ

# Հոկվարի դպրոց

## ԵՐԿՐՈՐԴ ԴԱՍ

Առաջին դասարանի հոկտեմբերիկներին, երկրորդ կիսամյակից սկսած, կարելի է տալ որոշակի հանձնարարություններ՝ դրանք աստիճանաբար բարդացնելով:

Յուրաքանչյուր աստղիկում հոկտեմբերիկներից մեկին հանձնարարվում է հետևել, որպեսզի բոլոր երեխաները կարգին պահեն դասագրքերը, տետրերը, գրենական պիտույքները, աշակերտական նստարանները: Մեկ ուրիշ հոկտեմբերիկ սանիտար է: Նա ամեն առավոտ ստուգում է իր աստղիկի երեխաների ձեռքերը, պարանոցի, երեսի մաքրությունը, համազգեստի վիճակը, պարզում է՝ բոլո՞րը թաշկինակ ունեն, թե՞ ոչ:

Առաջին դասարանի շատ աստղիկներում ընտրում են ծաղկարույծ, խաղավար, տնտեսվար:

Ծաղկարույծը հետևում է դպրոցի այն ծաղիկներին, որոնց խնամքը հանձնարարված է աստղիկին: Նա ջրում է ծաղիկները, բույսերի վրայից մաքրում փոշին, բույսերի աճի վերաբերյալ իր դիտումների մասին հայտնում ուսուցչուհուն և ընկերներին:

Հոկտեմբերիկները սիրում են խաղալ: Նրանք տնից բերում են սեղանի վրա խաղալու սարկաներ, գնդակներ, ցատկապարաններ, զանազան խաղալիքներ: Դրանք պահում և հանձնում է հոկտեմբերիկներին խաղավարը:

Տնտեսվարը պահում է աստղիկի «տնտեսությունը»՝ պլաստիլինը, գունավոր մատիտները, ալբոմները, մկրատը, ասեղները, թելերը, դիաֆիլմերը, աշխատանքային գործիքների հավաքածուն և անհրաժեշտության դեպքում դրանք տալիս է ընկերներին:

Հոկվարը պետք է հոգ տանի, որպեսզի աստղիկի ամեն մի հոկտեմբերիկ հանձնարարություն ունենա, քանի որ փոքրիկ երեխաները շատ ակտիվ են և բոլորն էլ ուզում են գործել: Որևէ մեկին թողնել առանց հանձնարարության՝ նշանակում է նրան վշտացնել երբեմն արտասվելու չափ:

Երկրորդ դասարանի աստղիկում հանձնարարությունը մի քիչ ավելի բարդ է: Հոկտեմբերիկներից մեկը ընտրվում է հոկվարի օգնական: Նա հոկտեմբերիկներին տեղեկացնում է հավաքույթի մասին, հետևում է, որ նրանք կատարեն հոկվարի հանձնարարությունը, պահում է աստղիկի «տնտեսությունը»: Աշխատանքը շարունակում են խաղավարը, սանիտարը և ծաղկարույծը:

Երրորդ դասարանի աստղիկներում հոկտեմբերիկներին ընտրում են գրադարանավար, ինչպես նաև՝ բրիգադիր-թիմուրական, որը աստղիկում կազմակերպում է հանրօգուտ աշխատանք: Առաջվա պես աշխատում են հոկվարի օգնականը, սանիտարը, խաղավարը, ծաղկարույծը:

Աստղավարը նախապատրաստում է իր օգնականին, որպեսզի նա, դառնալով պիոներ, կարողանա լինել օգտակար: Դրա համար նրան տալիս է ինքնուրույն հանձնարարություն՝ անցկացնել խաղ, ընկերների համար կարդալ պատմվածք, կազմակերպել որևէ աշխատանք:

Տարբեր հանձնարարություններ ստացած հոկտեմբերիկների համար նրանց բարեկամ պիոներները պատրաստում են տարբերանշաններ: Աստղավարի օգնականի թևքին կարելի է ամրացնել փոքրիկ աստղաձև նշան: Սանիտարը կրում է սպիտակ ժապավեն՝ վրան կարմիր խաչ, ծաղկարույծի համար կարելի է ժապավենի վրա նկարել ծաղիկ, խաղավարի համար՝ գնդակ ու ցատկապարան և այլն:

Աստղավարը հոկտեմբերիկների հետ միասին շաբաթական մեկ-երկու անգամ լսում է հանձնարարություն ստացածներին, թե ինչ են արել նրանք, երեխաներից ով է լավ կատարում կանոնները, իսկ ով՝ վատ, ում և ինչ բանում պետք է օգնել: Այդ խլում է ընդամենը 5-7 րոպե, բայց նման զրույցը փոքրիկների մեջ դաստիարակում է պատասխանատվության զգացում կոլեկտիվի առաջ և չափազանց օգտակար է:

Հաջորդ ամսում հանձնարարությունները վերաբաշխվում են: Այդպիսով երկու-երեք տարվա ընթացքում երեխաները սովորում են կատարել զանազան հանձնարարություններ, սովորում են ընկերներից պահանջել՝ կատարել կոլեկտիվի որո-

### *Խաղեր հոկտեմբերիկների համար*

**ԲԱՆԱԼԻՆԵՐ**



*Խաղացողները հրապարակում լայն շրջան են կազմում: Հոկվարի ազդանշանով խաղացողներից*

շումները և ենթարկվել դրանց, ձեռք են բերում պիոներին անհրաժեշտ կազմակերպչական որոշ հմտություններ և ունակություններ:

Որպեսզի հոկտեմբերիկները սովորեն հասարակական հանրօգուտ աշխատանք կատարել, պետք է երկրորդ, երրորդ դասարաններում աստիճանաբար բարդացնել հանձնարարությունները: Հանձնարարությունները կարելի է տալ ոչ միայն մեկ հոկտեմբերիկի, այլև՝ ամբողջ աստղիկին: Մի աստղիկի հոկտեմբերիկներին կարելի է հանձնարարել տոնի առթիվ զարդարել դասասենյակը, մյուսին՝ ամբողջ խմբի համար պատրաստել տոնածառի նշաններ, երրորդին՝ մաքրել բակի որևէ մասը կամ ուրիշ աշխատանք:

Հոկտեմբերիկների խմբին առանձին հանձնարարություններ կարող է տալ նաև դրուժինայի խորհուրդը: Երրորդ դասարանի ամբողջ հոկտեմբերիկական խմբին դրուժինայի խորհուրդը կանչում է պիոներական սենյակ, և խորհրդի նախագահը հոկտեմբերիկներին տալիս է, ասենք, այսպիսի մի հանձնարարություն.

Մեր դպրոցի շրջակայքում կա մի մանկապարտեզ, որի շեֆությունը վերցրել է դրուժինան: Այնտեղ պատրաստվում են Նոր տարվա տոնածառի հանդեսին: Ձեր խմբին հանձնարարվում է փոքրիկների համար պատրաստել դիմակահանդեսային քսան գլխարկ: Ժամկետը՝ յոթ օր: Գլխարկները պետք է պատրաստել խնամքով և գեղեցիկ: Թե դրանք ինչպես պետք է պատրաստել՝ ձեզ կսովորեցնեն աստղավարները: Դրուժինայի խորհուրդը հուսով է, որ դուք լավ կկատարեք այդ հանձնարարությունը: Չէ՞ որ դուք պատրաստվում եք շուտով պիոներներ դառնալու:

Դու պետք է հետևես, որ ժամանակին կատարվի դրուժինայի խորհրդի հանձնարարությունը:



# ՀՄՈՒՏ ՁԵՌՔԵՐ

ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Հրանտիկին մենք կանչում ենք
«Հմուտ ձեռքեր»,
Բայց ինչպե՞ս է այդ անունը
Նա վաստակել:
Ա՜յ, երբ տանը որևէ իր
Շարքից դուրս գա,
Հրանտիկը իսկույն ևեթ
Հանդես կգա:
Աթոռը մեր փչացել էր՝
Ոտքը չկար.
Երկար-բարակ մտածելու
Էլ կարիք կա՞ր.
Հրանտիկը տանը ունի
Տախտակ, սղոց,
Ունի ռանդա, մուրճ, ունի մեխ,
Կապույտ գոգնոց:
Հին աթոռը երբ վերցրեց
Նա իր ձեռքը,
Մի քիչ հետո նրան տվեց
Նախկին տեսքը:
Ա՜յ, ինչու ենք նրան կոչում
«Հմուտ ձեռքեր»:
Հրանտիկի նման եկեք
Լինենք մենք էլ:

Նկ. ՎԱԶԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ



ամեն մեկը արագորեն շրջադառնում է իր տեղը: Ով դանդաղ է կատարում, դառնում է խաղավար:

Խաղավարը մոտենում է խաղացողներից մեկնումեկին և հարցնում. «Ո՞ւր են բանալիները»: Նա պատասխանում է՝ ձեռքով ցույց տալով ուզած կողմը. «Գնա այնտեղ բախիր» և անմիջապես որևէ մեկի հետ տեղերը փոխում: Նրանց վազելու ժամանակ խաղավարը աշխատում է գրավել դատարկ շրջանը: Եթե այդ նրան հաջողվում է, խաղը վարում է տեղ չունեցողը:

Այն խաղավարը, որը չի կարողանում տեղ գրավել հինգ փորձից հետո, կարող է բացականչել՝ «Բանալիները գտա»: Այդ դեպքում բոլոր խաղացողները պետք է փոխեն իրենց տեղերը, և այդ ժամանակ խաղավարի համար հեշտ է որևէ մեկի շրջանը գրավել: Տեղ չունեցողը վարում է խաղը:

## ՃԱՆԱՉԻՐ ՁԱՅՆԻՑ

Բոլոր խաղացողները նստում են աթոռների վրա: Խաղավարը, որի աչքերը կապված են, նստում է առանձին: Նա սկսում է երգել բոլորին ծանոթ որևէ երգ: Երգելով մեկ տուն, խաղավարը լռում է: Երգի երկրորդ տունը երգում է երեխաներից որևէ մեկը: Երբ տունը կամ երգը վերջացած է, խաղավարը պետք է ասի, թե ով էր երգում:

Եթե նա իմացավ, խաղը շարունակվում է, բայց խաղավար է դառնում երկրորդ տունը երգողը: Թե ով պետք է շարունակի երգը, այդ մասին երեխաների հետ պետք է պայմանավորվել խաղավարի բացակայությամբ:



## ՄՈՐԱՎԻԱՅԻ ԳԵՂԵՑԿՈՒՀԻՆ

«Մորավսկի կրաս»... այս անունը երևի անծանոթ է ձեզանից շատերին: Այսպես են անվանում չեխական այն քարայրը, որ գտնվում է Մորավիայի կենտրոնում՝ Բրնո քաղաքում: Անունն արդեն բնորոշում է քարայրին. հայերեն այն կոչվում է «Մորավիայի գեղեցկուհի»:

Բնության անկրկնելի այդ «հրաշքը» հայտնաբերել է չեխ գիտնական Ապսոլոնը 1909 թվականին: Սկզբում այն եղել է շատ փոքր, բայց հետագայում չեխ հայրենասեր գիտնականների և երկրաբանների միջոցով ընդարձակվել և հասել է մինչև 1500 մետրի: Քարայրում նորանոր մասեր են գտել ոչ միայն չեխ, այլև գերմանացի գիտնականները:

1917 և 1938 թվականներին այստեղ եղել են մեծ ջրհեղեղներ, որոնց հետևանքով նոր տեղամասեր են հայտնաբերվել: Մարդիկ քարայրում բարձրանում են երկաթե աստիճանների միջոցով: Ներսում ձմեռ թե ամառ ջերմությունը 7 աստիճան տաքությունից չի բարձրանում: Քարայրի ամենաբարձր վայրը Մացոխա (խորթ մայր) ձորն է: Ինչո՞ւ է կոչվում խորթ մայր: Պատմում են, որ դարեր առաջ ժայռի գագաթին ապրել է մի կին: Մի օր հիվանդանում է սրա հարազատ երեխան, և մահաբեր հիվանդությունից փրկելու համար, ստիպված նա աստրծուն զոհաբերում է խորթ երեխային՝ նետելով նրան անդընդախոր ձորը: Բայց երեխան ընկնում է ոչ թե ձորը, այլ մոտիկ ժայռաբեկորներից մեկի վրա և փրկվում է: Այդ դեպքից հետո ձորը կոչվում է Մացոխա: Սա ունի 150 մետր բարձրություն:

Ամբողջ քարայրը նման է գեղեցիկ և հարուստ թանգարանի: Մի տեղ տեսնում ենք թուրքական գերեզմանոցը իր գմբեթաձև հուշաքարերով: Բնությունը այստեղ անգամ չի մոռացել թուրքական փաշային և զինվորներին, որոնք փառահեղ նստած գերեզմանոցի մեջտեղում կարծես սպասում են իրենց մոտալուտ կործանմանը: Մի այլ տեղ անկյունից քեզ են նայում արդեն բարեկամացած շունն ու նապաստակը: Հաջորդ մոմենտին մարդ ընկնում է մակարոնների աշխարհը: Այստեղ ամբողջ մի մեծ տարածություն վերևից կախված են մակարոնին շատ նման, սպիտակ, երկար ու բարակ քարեր: Թվում է, թե երկնքից մակարոնե անձրև է թափվում.

**Բաժինը վարում է պրոֆ. ԳԻՏՈՒՆՅԱՆԸ**

թերևս դրա համար է, որ չեխերը այն անվանում են մակարոնե անձրև:

Այցելուների վրա հուզիչ տպավորություն է թողնում այն խարույկը, որի վրա դարեր առաջ այրվել է չեխ մեծ հայրենասեր, ազատության մարտիկ Յան Հուսը: Խարույկը քարից է, բայց էլեկտրական վառ կարմիր գույնը այնքան բնական է դարձ-



րել կրակը, որ ակամայից զգում ես ճարճատող փայտի տաքությունը դեմքիդ և խորը ատելությամբ ես լցվում դեպի բռնակալներն ու ազատության դահիճները: Իսկ այն վարագույրը, որ անփութորեն կախ-

*Հարցրու՝ կպատասխանենք*

## ՕՃԱՌԻ ԳԱՂՏՆԻՔԸ

*Ինձ հետաքրքրում է, թե ինչու օճառը փրփրում է, իսկ երբ ձեռքերը ճարպոտ են լինում, օճառը նույնիսկ լպրծուն էլ չի:*

*ԱՆԱՀԻՏ ԳԵՎՈՐԳՅԱՆ*

*(Երևանի Պուշկինի անվան դպրոցի աշակերտուհի)*

Սիրելի Անահիտ, նախ դու փորձիր ճարպոտ ձեռքերդ տրորել մոխրով կամ սոդայով, հետո նոր լվացվել օճառով: Դու կտեսնես, թե ինչքան շուտ և լավ են մաքրվում ձեռքերդ:

Օճառը ալկալիի միացությունն է ճարպի հետ: Երբ դու օճառը

ված է անկյունի լուսամուտից, այնքան գեղեցիկ է ու նուրբ, որ չի տարբերվում անգամ ամենանուրբ շղարշից: Թվում է, թե վարագույրի հետևից տեսնում ես ողջ բնաշխարհը: Վարագույրը ողողված է բաց կանաչավուն լույսերի ցոլքերով:

Ամբողջ քարայրը ներդաշնակված է գունավոր էլեկտրականությամբ: Այստեղ շատ գեղեցիկ է, իսկ ամենամեծ «հրաշքը» «Վեց գեղեցկուհի լճերն» են: Դրանք շրջանցում են ամբողջ քարայրը և գտնվում են նրա ներսում: Լճերի երկարությունը 750 մետր է, իսկ ջրի խորությունը 1 մետրից հասնում է մինչև 50 մետրի: Ջուրը արտակարգ սառն է ու պարզ: Այստեղ երբեմն հանդիպում են իշխան ձկներ: Կապտականաչավուն լույսերը ավելի կախարդիչ են դարձնում ողջ տեսարանը:

Քարայրում յուրաքանչյուր քար այնքան գեղեցիկ է, որ նրանցից ամեն մեկը արվեստի մի նմուշ կարելի է համարել: Առաջին պահ թվում է, թե այդ բոլորը կատարվել է գերբնական էակների կողմից: Բայց չէ՞ որ մարդը ընդունակ է ամենամեծ հրաշքները գործելու: Անցյալում քարայրը համարվել է սրբատեղ, իսկ հիմա այն դարձել է Չեխոսլովակիայի ամենահետաքրքիր տեսարժան վայրերից մեկը: Դուք կմեծանաք, և ձեզանից ով որ լինի Բռնոյում, անպայման թող տեսնի բնության այդ նրբաճաշակ, շքեղ կոթողը:

ԿԱՏՅԱ ՍԱՐԳԱԶՅԱՆ

# ԱՄԵՆԱ... ԱՄԵՆԱ... ԱՄԵՆԱ...



ԱՄԵՆԱԵՐԿԱՐ մորուքը պատկանում է նորվեգացի Հանս Լանսետին. 3 մետր 30 սմ:

ԱՄԵՆԱՇԱՏ ատամ ունեցողը համարվում է այգու սովորական խխունջը. ատամների թիվը հասնում է 14175-ի:

ԱՄԵՆԱԵՐԿԱՐ բեղ ունեցողը Բոմբեյ քաղաքում ապրող հնդիկ Մասադիյա Դինն է: Նրա բեղերի երկարությունը հասնում է 1 մետր 80 սմ:



ԱՄԵՆԱՀՈՏԱՎԵՏԸ ամերիկական կակտուսի ծաղիկն է: Նրա բույրը զգացվում է մեկ կիլոմետր հեռավորության վրա:

ԱՄԵՆԱՄԵՆԱՎՈՐ ծառը գտնըվում է Սահարայում, Տեներեա օազիսում: Դա մի արմավենի է, որից հազար կիլոմետր հեռավորության վրա միայն կարելի է հանդիպել ուրիշ ծառի:

ԱՄԵՆԱՀՆԱԳՈՒՅՆ դեղատոմսը գրվել է մոտավորապես 1600 թվականին մեր թվականությունից առաջ:

ԱՄԵՆԱՇԱՏ սերունդ տվողը սունկն է: Կան տեսակներ, որոնք տալիս են 7 տրիլիոն սերմ:



ԱՄԵՆԱԱՉՔԻ ընկնող ռեկորդը թռիչքի բարձրությունից՝ պատկանում է հարավ-աֆրիկյան փոքրիկ անտիլոպին: 10 կիլոգրամ քաշ և մոտ մեկ մետր երկարություն ունեցող այս կենդանին հեշտությամբ կարող է թռիչքով անցնել 7 մետրանոց ժայռը:

ԱՄԵՆԱՄԵԾ թմբուկը գտնվում է Տեխասի (ԱՄՆ) ուսանողական նվագախմբում: Նրա շրջանագիծը հավասար է 8 ու կես մետրի: Թմբուկ-հսկան ամրացված է հատուկ քարշակի վրա, որ տեղափոխում են տրակտորի օգնությամբ:

ԱՄԵՆԱԼԱՅՆ փողոցը գտնվում է Բրազիլիայի նոր մայրաքաղաքում՝ Բրազիլիայում: 2,5 կմ երկարություն ունեցող այդ փողոցի լայնությունը 280 մետր է:

ԱՄԵՆԱՄԵԾ արհեստական սիրտը գտնվում է Պորտլենդ քաղաքի թանգարաններից մեկում (ԱՄՆ): Այդ մոդելի չափերն են 4. 4. 6,6 մետր: Այցելուները մտնում են ներս, ճանապարհորդում ճիշտ այնպես, ինչպես արյունն է շրջանառություն կատարում:



թրջում ես ջրով, ապա ջրի ներգործությամբ այն վերածվում է ալկալիի և ճարպաթթուների: Ալկալին անմիջապես միանում է ձեռքերին քսված ճարպին և «կուլ է տալիս» նրան: Իսկ օճառից անջատված ճարպաթթուները առաջացնում են պղպջակներ, որոնք իրենց վրա են հավաքում կեղտը և ջրի հետ հեռանում:

Երբ ձեռքերը շատ են ճարպոտ, մաքրելը հեշտ չէ: Օճառից անջատվող ալկալին քիչ է, որպեսզի բավականացնի այդքան շատ ճարպին: Դրա համար էլ օճառը նույնիսկ լպրծուն չի դառնում: Իսկ եթե դու ալկալի ավելացնես (մոխիր կամ սոդա), ապա ձեռքերիդ վրայի ամբողջ ճարպը կմիանա ալկալիին և հեշտությամբ կմաքրվի:

Ամեն անգամ, երբ դու լվացվում ես, կատարում ես քիմիական բարդ ռեակցիա:

# ՁԱՐՄԱՆԱԼԻ ՀՈՒՇԱՐՁԱՆՆԵՐ

Որքա՜ն հուշարձաններ կան աշխարհում: Բրոնզից ու մարմարից քանդակված մեծ զորավարներ ու բանաստեղծներ, ազատության համար մարտնչողներ, գիտնականներ ու աշխատանքի հերոսներ, նշանավոր իրադարձությունների ու գործերի մասին պատմող հպարտորեն վեր խոյացած կոթողներ...

Մարդիկ ձգտում են հավերժացնել աչքի ընկնող այն ամենը, ինչ եղել է ու կա երկրի վրա: Բայց երբեմն այդ գործում հանդիպում ենք ծիծաղաշարժ բաների:

* * *

Սկզբում կնճիթավոր բզեզին անիծում էին: Սա արմատի վրա փչացնում էր բամբակենին, և շատ ֆերմերներ կանգնեցին սնանկանալու վտանգի առաջ: Ստիպված եղան աճեցնել ուրիշ կուլտուրաներ, որոնց չէր վնասում բամբակենու կնճիթավոր բզեզը: Հրաշք տեղի ունեցավ: Նոր կուլտուրաներից զգալիորեն ավելի շատ եկամուտ էր ստացվում, քան բամբակենուց: Այդժամ նահանգի երախտապարտ ֆերմերները Էնտերպրայզ քաղաքում հուշարձան կանգնեցրին մեքսիկական կնճիթավոր բզեզին:

Հուշարձանի վրա փորագրված են հետևյալ բառերը. «Խորին երախտագիտությամբ՝ բամբակենու կնճիթավոր բզեզին, այն բանի համար, որ նա բարօրության պատճառ դարձավ»:

* * *

Սա ավանդություն չէ, այլ՝ անցած դարում տեղի ունեցած իրական դեպք: Մի ավստրալիացի ֆերմեր իր հայրենիքն է բերում կակտուս-օպունցիա: Ֆերմերներին դուր է գալիս այդ բույսը, որը ծաղկում էր շատ գեղեցիկ և համեղ պտուղներ էր տալիս: Օպունցիայի երկար փշերը թույլ էին տալիս դաշտերում այն օգտագործել իբրև կենդանի ցանկապատ: Անցավ որոշ ժամանակ, և կակտուսը հեղեղեց ողջ Ավստրալիան: Երկիրը կանգնեց վտանգի առաջ: Ֆերմերները պատերազմ հայտարարեցին կակտուսի դեմ: Գործի դրվեցին տրակտորներ, մեքենաներ: Ոչինչ չօգնեց: Ֆերմերները անձնատուր եղան: Երկրին սպառնում էր աղետը: Եվ ահա օգնության է հասնում անկըշտում կակտոբլաստիսը: Այդ թրթուրը բերեցին Հարավային Ամերիկայից: Պարզվեց, որ սա օպունցիայի կատաղի թշնամին է: Մի քանի տարի անց, ֆերմերների հողը փրկվեց ու այնտեղ կրկին հաստատվեցին ցորենը, տարեկանը, վարսակը:

Քվինսլենդի երախտապարտ բնակիչները հուշարձան կանգնեցրին օպունցիայի հաղթողին՝ կակտոբլաստիս թրթուրին:

* * *

Այդպիսի հուշարձանները բազմաթիվ են: Իտալացիները հաշվի չառնելով առակներն ու անեկդոտները, հուշարձան են կանգնեցրել էշին: Քիչ հուշարձաններ չեն կանգնեցված նաև շների պատվին:



Դեռ Լայկան չէր հասել տիեզերք, երբ նրա փառքը տարածվեց աշխարհով մեկ: Եվ ահա ֆրանսիացի բանվոր Դա Կոստան իր բակում կառուցեց Լայկայի հուշարձանը՝ ցեմենտից, կրից, ապակուց և զարդարեց բազմագույն ապակիներով ու կերամիկայով: Պատվանդանի վրա Լայկայի պատկերն է, իսկ նրա գլխավերևում՝ մի գունդ, որը խորհրդանշում է արբանյակը:

* * *

Միջազգային մրցանակաբաշխությունների ժամանակ համտես էին անում ներկայացված պանրի տեսակները և լավագույններին արժանացնում մրցանակների: Կանադական Պերտ փոքրիկ քաղաքի բնակիչները որոշեցին զարմացնել աշխարհին: Նախապատրաստվելով Չիկագոյի միջազգային ցուցահանդեսին, նրանք պատրաստեցին մի վիթխարի պանրի գլուխ: Այն նույնիսկ ձին չէր կարող տանել: Պանրի գլուխը կշռում էր 10 տոննա, տրամագիծը ինը մետրից ավելի էր, դրա պատրաստման վրա ծախսվել էր 94 հազար լիտր կաթ: Դա պատմության մեջ ամենավիթխարի պանիրն էր: Պերտի բնակիչները, իրենց նվաճումով հպարտացած, քաղաքում հուշարձան կանգնեցրին պանիր-հսկայի կերպարով:

## 17-ՐԴ ԴԱՐԻ ՏԱՐԱԶՈՎ



Հրաբխային ժայթքումից կործանվեց Տրիստան դա Կունյա կղզին, և բնակիչները փոխադրվեցին Անգլիա: Այդ կղզին գտնվում էր Ատլանտյան օվկիանոսում, Բարեհուսո հրվանդանի և Հարավային Ամերիկայի մեջտեղում: Այնտեղ ապրում էին ընդամենը մի քանի հարյուր մարդ: Բոլոր բնակիչները հագնում էին 17-րդ դարի տարազ և նրանցից ոչ ոք մինչև Անգլիա գալը չէր տեսել ո՛չ կինոնկար, ո՛չ ավտոմեքենա, ո՛չ ռադիոընդունիչ:

## ԽԱՉԲԱՌ-ԳԱՂՏՆԱԳԻՐ

1. Իտալական մեծ կոմպոզիտոր: 2. Միջազգային պիոներական ճամբար՝ Սովետական Միությունում: 3. Գիշատիչ կենդանի: 4. Միութենական հանրապետության մայրաքաղաք: 5. Շիրվանզադեի վեպերից: 6. Քաղաք, որտեղ սովորել է հայ մեծ լուսավորիչ Խ. Աբովյանը: 7. Գետ՝ Հնդկաստանում: 8. Հին Ասորեստանի մայրաքաղաքը: 9. Պետություն՝ Աֆրիկայում 10. Տիեզերագնաց օդաչու: 11. Կաթնասուն կենդանի: 12. Հայ մեծ փիլիսոփա: 13. Բնության երևույթ: 14. Հայ գուսան: 15 Ա[illegible] դարձային պտուղ: 16. Ընտանի կենդանի: 17. Հիվանդության հարուցիչ: 18. Քաղաք՝ Հայաստանում:

Ճիշտ լուծելուց հետո, շրջանակներից որևէ մեկում դուք կկարդաք տիեզերագնացներից մեկի անունը և ազգանունը:

*ԳԵՎՈՐԳ ՄԽԻԹԱՐՅԱՆ*

*(Կիրովականի, 7-րդ դասարանի աշակերտ)*




## ԶԱՐՄԱՆԱԼԻ ԿԵՆԴԱՆԻ

*Այստեղ կա տասը կենդանու գծանկար: Ուշադիր նայեք և գտեք, թե ինչ կենդանիներ են դրանք:*



# ԺԱՄԱՆՑ

## ԽՆԴԻՐ-ԲԱՌԱՇՂԹԱ

*Այս նկարում պատկերված իրերի անուններով լրացրեք շրջանակի վանդակները: Ինչ տառով որ վերջանում է առաջին բառը, հաջորդն սկսվում է այդ նույն տառով, օրինակ՝ 1. Ձկնորս: 2. Սունկ*




*3. Կրակ և այլն: Անունները երկրորդ անգամ չկրկնել:*

*Առաջարկ՝ ՎԱԶԻ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ*

## ԵՐԿԻՐ-ԼՈՒՍԻՆ

*Միայն մեկ ճանապարհ կա դեպի Լուսին: Գտեք այդ ճանապարհը:*





## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*
*Նկ. ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ*

**ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ**

**ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ**

**ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ**

# ՀԱԿՈԲ ՊԱՐՈՆՅԱՆ

1888 թվին, աշնանային ամպամած մի առավոտ, Պոլսի Օրթագյուղ թաղամասով անցնում էր տխուր ու դալկադեմ մի մարդ։ Նրա ծոցի թղթապանակում դրված էր «Խիկար» երգիծական թերթի հաջորդ համարի մակետը։

Ամբողջ գիշերը չէր քնել. նյութերը գրել, խմբագրել, մակետը ձևավորել էր միայնակ և ըշտապում էր հասցնել տպարան։

Բաբազօղլուի սրճարանի մոտ նրան ընդառաջ ելավ թաղամասի հարուստներից մեկը։

— Բարև՛, հարգելի խմբագիր։

— Բարև՛, Նուպար էֆենդի։

— Բոլորին կուրախացնեք, կըծիծաղեցնեք, իսկ դուք միշտ տըխուր եք, պատճառն ի՞նչ է։

— Ուրախանալու առիթ չունիմ։

— Եկուր ղայֆե մը խմինք։

— Ո՛չ, կանապարիմ։

— Թե կանապարիք, ինչո՞ւ կառքով չեք երթար։

— Ստակ չունիմ։

— Ստակ դուք միշտ չեք ունենար, քանի որ հարուստներեն կխուսափեք և ձեր թերթին մեջ առանց խնայելու կծաղրեք. կըպախարակեք մեզ...

— Ոչինչ, էֆենտիս, թող ես երբեք էլ ստակ չունենամ... Կարիք չունիմ շահամոլ և ազգուրաց հարուստներու ողորմության, իմ թերթի միջոցով անոնց ծաղրելով՝ ես հաճույք կզգամ, եվ քեզի կանխավ կըսեմ, Նուպար էֆենդի, որ վաղվան համարում ծաղրվելու հերթը քոնն է։

— Ես ալ քեզի կանխավ կըսեմ, որ «Խիկարդ» էլ վաղվան համար չի ունենար, անոր կյանքի թելը կտրված է...

Այս խոսքերն այնպես ազդեցին մշտական հոգսերից ու թոքախտից հյուծված գրող Հակոբ Պարոնյանի վրա, որ նրան թըվաց, թե իր կյանքի թելը կտրեցին։ Այնուամենայնիվ, նա տվեց այսպիսի պատասխան.

— Հոգ չէ, էֆենդիս, ձեր աղվեսային դիմանկարը դուք շուտով կտեսնեք իմ «Ազգային ջոջեր» գրքում։



«Խիկարը» Հակոբ Պարոնյանի վերջին թերթն էր, որը, իրոք, այդ օրվանից այլևս չհրապարակվեց։ Այդպես, կառավարության կողմից արգելվել էին Պարոնյանի խմբագրությամբ լույս տեսնող «Եփրատ», «Մեղու», «Թատրոն», «Ծիծաղ» թերթերը, ըստ որում «Թատրոնը» իր գոյության ընթացքում արգելվել և վերահրատարակվել է ութ անգամ։


Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԿՐՏԻՐՈՍՅԱՆ Ռ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ա.

**Пионер"** на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.

Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41. Հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06։

ՎՖ 10567։ Պատվեր՝ 1985։ Տպաքանակ՝ 11.300։ Տպագրական 5 մամուլ։ Ստորագրված է տպագրության 3/XII 1963 թ.։ ՀՍՍՌ կուլտուրայի մինիստրության պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան փ., № 91։

Գինը 20 կ.

Արևմտյան Հայաստանում, սուլթանական ծանր, արյունոտ ռեժիմի տակ, տաղանդավոր երգիծաբանը մեծ պայքար էր ծավալել, ինչպես թուրքական բռնակալության, այնպես էլ աշխատավոր ժողովրդի մյուս բոլոր թշնամիների դեմ։

Իրար ետևից նա գրեց «Երկու տիրոջ ծառա», «Ատամնաբույժն արևելյան», «Շողոքորթը» և «Պաղտասար աղբար» կոմեդիաները, «Քաղաքավարության վնասները», «Ազգային ջոջերը» և այլ ստեղծագործություններ, որոնք նշանակալից ավանդ էին հայ գրականության մեջ։

Այդ գործերում Պարոնյանը սպանիչ ծաղրի է ենթարկել կաշառակեր պաշտոնյաներին, ծըռիակեր հոգևորականներին, հարուստ էֆենդիներին ու ամիրաներին, ինչպես նաև նրանց պընակները լիզող բուրժուական ինտելիգենտներին, որոնց նա անվանում էր «մեծապատիվ մուրացկաններ»։

Մեծ երգիծաբանի սրատես աչքերից չէին վրիպում նաև խավարի ու տգիտության մեջ խարխափող աշխատավոր մասսաների կենցաղային թերությունները, բայց այդ թերություններն ուղղելու նպատակով, նա այստեղ գործածում էր ոչ թե սպանիչ սարկազմ, այլ մեղմ ու զվարճալի հումոր։

Երկար տարիներ Պարոնյանն աշխատել է որպես ուսուցիչ, գրել բազմաթիվ մանկավարժական հոդվածներ։ Դեռևս այն ժամանակ նա պահանջում էր բացել պոլիտեխնիկ դպրոցներ, դպրոցներին կից ունենալ արհեստանոցներ։ Նա հրատարակում է «Թատրոն բարեկամ մանկանց» առաջին մանկական թերթը, որով հայ մանուկներին սովորեցնում էր լինել աշխատասեր, սիրել հայրենիքն ու մայրենի լեզուն։

Ահա թե ինչու հայ մեծագույն երգիծաբան Հակոբ Պարոնյանի ստեղծագործությունները այսօր դարձել են շատ ժողովուրդների սեփականությունը և բոլորը խոր հարգանքով նշում են նրա ծննդյան 120-ամյակը։

*ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ*



# ՎԱԼԵՐԻ ԲՐՅՈՒՍՈՎ



*1916 թվականի հունվարյան ցրտաշունչ մի օր, Թիֆլիսի արտիստական թատրոնի հանդիսասրահը լեփ լեցուն էր հայ գրական մշակույթի շատ ներկայացուցիչներով։ Նրանք սիրով ունկնդրում էին ռուս անվանի բանաստեղծ Վալերի Բրյուսովին.*

*—Հայ աշխարհը հսկայական նշանակություն ունի ամբողջ կուլտուրական մարդկության համար,—իր ելույթում ասում էր Բրյուսովը։—Մենք՝ ռուսներս, պետք է իմանանք հայոց պատմությունը՝ չխոսելով այն մասին, որ բոլոր կրթված մարդիկ պետք է ճանաչեն Հայաստանը։*

*Վալերի Բրյուսովը ռուս բանաստեղծներից առաջինն էր, որ զբաղվեց եղբայրական ժողովուրդների գրականության թարգմանությամբ։*

*Ուսումնասիրելով հայ ժողովրդի հերոսական պատմությունն ու բազմադարյան գրական մըշակույթը, Բրյուսովը ձեռնամուխ եղավ ժողովրդականացնելու հայ գրականության լավագույն նմուշները։ 1916 թվականի գարնանը Բըրյուսովի խմբագրությամբ Մոսկվայում լույս տեսավ* «Поэзия Армении» *ժողովածուն, որը ընդգրկում էր հայ գրականության կարևոր էտապները, սկսած հնագույն շրջանից մինչև քըսաներորդ դարի սկիզբը։ Այս ժողովածուի միջոցով ռուս ընթերցողը ծանոթացավ Քուչակի և Նարեկացու, Ալիշանի և Սայաթ-Նովայի, Դուրյանի և Տերյանի, Իսահակյանի և Թումանյանի անմահ ստեղծագործություններին։ Այդ գործերի մեծամասնությունը բանաստեղծական մեծ վարպետությամբ թարգմանել էր Բրյուսովը՝ հարազատ մնալով բնագրերին։*

*Վալերի Բրյուսովի կատարած աշխատանքը մի փայլուն հուշարձան է հայ-ռուսական մշակութային կապերի պատմության մեջ։ Այդ բարձր ծառայությունների համար Բրյուսովին շնորհվել է Հայաստանի ժողովրդական բանաստեղծի կոչում։*

*Մտերմական կապեր հաստատելով Հովհաննիսյանի, Թումանյանի, Տերյանի և ուրիշ շատ անվանի բանաստեղծների հետ, Բրյուսովը մինչև իր կյանքի վերջը մնաց հայ ժողովրդի ամենամոտ ու անկեղծ բարեկամը։*

*Լրացավ մեծ բանաստեղծի և թարգմանչի ծննդյան 90 տարին։*

